IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS

208bis, Rue Lafayette Paris *(10)*

Le Gérant H STEPHAN

Ըստ Պ. Պրիանի, յանձնախումբը, յառաջիկայ նիստին համար պէտք է մշակէ զանազան հարցերու վերաբերեալ տեղեկագրեր, ինչպէս թղթատարական, անցագրային, դրամական, ելեկտրական ուժի բաշխման հարցեր։

Յանձնախումբը կը բաղկանայ Գերմանիոյ, Անգլիոյ, Իտալիոյ, Դանիոյ, Ֆինլանտայի, Յունաստանի, Լեհաստանի, Փորթուկալի, Սպանիոյ, Զուիցերիոյ եւ Եուկօսլաւիոյ ներկայացուցիչներէն։

## Գերմանիոյ պատերազմական ելեւմուտքը

Գերման կառավարութեան եւ ընկերվարական կուսակցութեան միջեւ, բաւական լուրջ դժուարութիւններ ծագած են, պատերազմական ելեւմուտքի մասին, որ մօտերս վիճաբանութեան պիտի ենթարկուի խորհրդարանին մէջ Ազգայնականներու յարուցած աղմուկին եւ անոնց խափանարար աշխատանքներուն հետեւանքով, վարչապետը ստիպուած է դիմում ընել ընկերվարականներուն, մեծամասնութիւն ապահովելու համար ելեւմուտքի քուէարկութեան ընթացքին։

Կ'ըսուի թէ վարչապետը առաջարկած է ընկերվարականներուն որ եթէ չուզեն քուէարկել պատերազմական վարկերը, գոնէ ձեռնպահ մնան. որպէսզի այս կերպով, կարելի ըլլայ ապահովել մեծամասնութիւն մը, շնորհիւ կառավարական կուսակցութեանց քուէներուն։

## Բռնի քանուորութիւն

Խնայողական նկատումներով, խորհրդային իշխանութիւնները ընդհանուր քննութեան մը ձեռնարկեցին բոլոր գործարաններուն մէջ, Որոշուած է աւելորդ բանուորներ աշխատցնել պէտք եղած տեղերը։ Աւելի քան 4000 գործաւորները Լէնինկրատէն ղրկուեցան դաշտերը։ Անոնք որ կը մերժեն՝ երթալ իրենց յատկացուած վայրերը, բռնի կը ղրկուին եւ նոյնիսկ կը զրկուին իրենց հացի քարդերէն։















## Հ. Յ. Դ.

*ԳԱՒԱՌ*

*ՄԱՐՍԷՅԼԻ Ռոստոմ ենթակոմիտէի ընդհ. ընկերական ժողովը այսօր Չորեքշաբթի իրիկուն ժամը 8.30ին սովորական հաւաքատեղին։ Ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է։ Կարեւոր օրակարգ։ Ներկայանալ անդամատետրով։*

*ԼԻՈՆԻ Համազասպ խումբի ժողովը այսօր իրիկուն ժամը 8.30ին*, 181 Cours Lafayette. Café de la Gareի *սրահին մէջ։*

*ՎԱԼԱՆՍԻ Կոմիտէն իր ցաւակցութիւնները կը յայտնէ ընկ. Ղազար Գալուստեանի իր փոքրիկին մահուան առթիւ։*

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

*ՓԱՐԻԶԻ Հայ Գործազուրկներու Օգնող Մարմինը ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր միութիւններու ներկայացուցիչները այս Կիրակի առաւօտ ժամը 10ին Ֆլորիա ճաշարանը, 61* Rue Mr. le Prince։ *Օրակարգ՝ զեկոյց գործադիր մարմնոյ։*

*Զ. Ե. Ո. Միութեան Փարիզի Վահագն գրադարանին դասախօսութիւն այս հինգշաբթի երեկոյ ժամը 9ին Ֆլորիայի մէջ։ Կը դասախօսէ Պ. Եր. Տ. Անդրէասեան* եղիշէի *մասին։ Մէկ ժամ սինեմա։ Կը հրաւիրուին անդամներն ու համակիրները։*

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

*Ստորագրեալներս պարտականութիւն կը զգանք խորին շնորհակալութիւն յայտնելու Պ. Աբրահամ Կէօնճեանի, որուն շնորհիւ Ատանայի Հայր. միութիւնը կազմուեցաւ, Մարսէյլի մէջ 1930 Դեկտ. 28ին.*

Խումբ մը Ատանացիներ

*Մարսէյլ 25 Փետր. 931*

## ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

*ՍՏԱՑԱՆՔ*

*Մարսէյլ, Յ. Դ.— Ստացած ենք։ Տեսնել «Յառաջ» թիւ 1494։*

*Վիլուրպ, Գ. Դ.— 35։*

*Բասսալանքա, Ա. Զ.— 830 Կարգադրեցինք։*

*Վալանս, Գ. Ս.— 35։*

*Պոլանքուռ, Ն. Շ.— 100։*

*Փոն տը Շէրիւի, Գործ.— 195։*

*Մարսէյլ, Գործ.— 1090։*

*Մարսէյլ, Մ. Ա.— 38։*

*Լիոն, Թաղ.— 50։*

*Նիս, Յաբ.— 140։ Կ. Պ.ի հաշւոյն։*

*Շաս, Պ. Ա. — 25։*

*Մարսէյլ, Աօլ.— 73։*

*Հայլէնտ Փարք, Ա. Ակ.—30 տոլ.։*

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

*— Կը փնտռեմ եղբայրներս Սասունի Ահարոնք գիւղացի Յովհաննէս, Կարապետ եւ Պօղոս Շահինեան, որոնք ընդհ. պատերազմէն առաջ կը գտնուէին Տիգրանակերտի Հուսայնան գիւղը։ Կրտսեր եղբայրս Արմենակ 1914ին կ'աշխատէր Բէյրութի աղիւսանքներուն մէջ։ Մինչեւ այսօր իրենց մասին լուր չկայ։ Իրենց հասցէն գիտցողներէն կը խնդրուի իմացնել Շահինեան Մկրտիչի 96* bis rue de la Tour-Billy, Argenteuil, (S. et O.) France։ *Ճշգրիտ լուր տուողին 500 ֆրանք նուէր։*

*— Կը փնտռուի ընիկ Մարաշցի Նաթան Մոմճեան եւ իր կինը Ռոզա Մոմճեան։ 3 տարի առաջ կը գտնուէին* Ardoise *գիւղը* (Gard)։ *Այժմ կը գտնուին Փարիզ կամ շրջանները։ Իմացնել Աւետիս Շիրոյեանի*, Maison Palmier, Grand'Rue, Bollène, (Vaucluse).



**Վալանսի** *գործակալէն «Յառաջ» ստացողները կը խնդրուի իրենց բաժնեգինները վճարել գործակալ Պ. Աւետիս Փնրգիկեանէ։*

**Ռոմանի** մէջ Յառաջի գործակալն է՝ Պ. Խաչիկ Կարապետեան, 22 Rue St. Nicola, Romans.










IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS

208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H STEPHAN

## Հ. Յ. Դ. ԵՒՐՈՊԱՅԻ ԿԵԴՐ. ԿՈՄԻՏԷՆ

ընդհ.ժողովի կը հրաւիրէ Փարիզի և շրջաններու բոլոր ընկերները անխտիր այս կիրակի կէսօրէ վերջ ժամը ճիշդ 2ին, 120 Պուլվառ Պէլվիլի սրճարանին վերնայարկը:

Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է:

Զեկոյցներ.— ՅՈՒՆԱՀԱՅ ԳԱՂՈՒԹԻ ՄԱՍԻՆ՝ ՇԱՒԱՐՇ ՄԻՍԱՔԵԱՆ եւ ՍՈՒՐԻՈՅ ՄԱՍԻՆ՝ Վ. ՓԱՓԱԶԵԱՆ:

## ՄԱՐՍԷՅԼԻ Հ. Յ. Դ. ԴՊՐՈՑ

Վաղը Ուրբաթ իրիկուն ժամը 8,30—9.30, Հ. Յ. Դ. ծրագրի մեկնաբանում (Ընկ. Պ. Հիւսեան):

Ժամը 9.30—10.15, Համառօտ պատմութիւն նախայեղափոխական շարժումներու (Ընկ. Տ. Թադէոսեան):

## ՓԵՐՈՒԱՐ 18 ԱԼՖՈՐՎԻԼԻ ՄԷՋ

Ալֆորվիլի Հ. Յ. Դ. Ս. Մինասեան ենթակոմիտէի կողմէ

Այս Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին 128 Rue Etienne Doletի սրահը

կր նախագահէ՝ ՏՕՔԹ. Յ. ՔԻՒԹԻՒՔԵԱՆ

կը խօսին՝ ընկ. ՕՀԱՆ ԿԱՐՕ, ՌԷՆ և Հ. ՈՒԶՈՒՆԵԱՆ

Գեղարուեստական ճոխ բաժին

Երգ, արտասանութիւններ եւ անակնկալներ

## «ՓԵՒՐՈՒԱՐ 18» ՍԷՆ ԼՈՒԻ (ՄԱՐՍԷՅԼ) ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Ակնունի ենթակոմիտէի, Ս. Մարկրիթի «Համազասպ» ենթակոմիտէի եւ Ս. Լուի Պատ. միութեան: Այս կիրակի ժամը 2.30ին:

կը խօսի՝ Ընկ. ՄԱՐՈՒԹԵԱՆ

Գեղարուեստական ճոխ բաժին

## ԵՐԵԿՈՅԹ — ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Կազմակերպուած Շավիլի Երկս. Երիտ. Միութեան կողմէ

14 Մարտ Շաբաթ իրիկուն ժամը 8.45ին

Salle Pantinի սրահին մէջ, 114 Grand'Rue Chaville

կը ներկայացուի՝ ՔԱՐՇԸԼԸ ԱՐԹԻՆ ԱՂԱ

Դիմակաւոր եւ անդիմակ պարահանդէս կէս գիշերէն մինչև առաւօտ

Թանկօի մրցում, ընտիր նուագախումբ, ճոխ պիւֆէ՝

ժողովրդական գիներով — Մուտք 5 ֆրանք

Հաղորդակց. միջոց.— Առնել հանրակառք թիւ 1 եւ իջնել Ancienne Mairie, Շավիլ:

## ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

Նախաձեռնութեամբ՝ Հ. Յ. Դ. Վիէնի Ապառաժ խումբին կողմէ

Ղեկավարութեամբ դերասան Մ. ՄԱՐՈՒԹԵԱՆԻ

Այս կիրակի ժամը 2ին Etablissement Réunis

(Փասգալի Սինէմայի սրահին մէջ

կը ներկայացուի՝ ՊԱՆՔ ՕԹՕՄԱՆԻ ԳՐԱՒՈՒՄԸ

Տոմսերը կը ծախուին Պ. Այանեանի, Ն. Խաչիկեանի, Ա. Ալէքսանեանի, Մ. Մուրատեանի մօտ եւ հանդէսին օրը թատրոնի կիշէն:

Գիները 4 եւ 3 ֆրանք

## ԵՐԵԿՈՅԹ — ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Շապին Գարահիսարի եւ շրջանի «Ռազմիկ» Հայրենակցական Միութեան կողմէ: 4 Ապրիլ Շաբաթ իրիկուն ժամը 8.30էն մինչեւ առաւօտ: 51 Rue de Clichy, Société Française de Photographieի սրահներուն մէջ:

Բոլոր կազմակերպութիւններէն կը խնդրուի նկատի ունենալ այդ թուականը:

## Հ. Մ. Ը. Մ-Ի ՍԿԱՈՒՏԱԿԱՆ ՄԵԾ ԵՐԵԿՈՅԹ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Այս կիրակի իրիկուն ժամը 8ին 84 Րիւ Շաբ

Հովանաւորութեամբ ՊԱԼԱՔԵԱՆ սրբազանի

Հրաւիրուած են նաեւ Մարսէյլի ֆրանսական եւ ռուսական Սկաուտական կազմակերպութեան պետերը:

Խմբերգ, արտասանութիւններ, ֆանթէզիներ, բուրգեր, շուէտական մարզանք, սկաուտական կենդանի պատկերներ, եւայլն:

Սկաուտներու կողմէ կը ներկայացուի

ՊԱՇՏՕՆՍ ԽՌՄԲԱԼ Է եւ ՀՆԱՐԱՄԻՏ ՎԱՐԶԱԿԱԼԸ (զաւեշտ)

Տոմսեր՝ 10, 7 եւ 5 ֆրանք

## ՀՐԱՊԱՐԱԿ ԵԼԱՒ

Լիոնի, Ցէսինի եւ շրջանի գաղութահայութեան օգտակար ու ձեռնտու գիրքը.

### "ԼԻՈՆԱՀԱՅ ՈՒՂԵՑՈՅՑ-ՏԱՐԵՑՈՅՑ„Ը

ՊԱՏԿԵՐԱԶԱՐԴ եւ ՔԱՐՏԻՍԱՒՈՐ

Հրատ. Տպ. «ԵՓՐԱՏ»ի

Գինն է.— Ամէն անզի համար 7 ֆր., փնտռեցէք՝ գրավաճառներու եւ ամէն թերթի գործակալներուն մօտ:

Գաւառներէ եղած յանձնարարութեանց համար դիմել կեդրոնատեղի, H. Tatéossian, 34 Rue Villeroy. Lyon.

## Հ. Յ. Դ.

### ՓԱՐԻԶ

ՔԼԻՇԻ, Լըվալուա-Փէրէ եւ Սէնթ Ուան բնակող բոլոր անհատ Դաշնակցականները ստիպողաբար ժողովի կը հրաւիրուին այս շաբաթ իրիկուն ժամը 9ին փլաս տը լա Րէբիւպլիքի (Քլիշի) ծխավաճառի սրճարանը:

ԻՍԻ-ԼԷ ՄՈՒԼԻՆՕ Պիյանքուր վռամեան խումբի ժողովը, վաղը ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին ծանօթ հաւաքատեղին: Բացակաները նկատի պիտի առնուին:

## ՑՈՒՇԱՏԵՏՐ

ՓԱՐԻԶԻ Հայ Գործազուրկներու Օգնող Մարմինը ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր միութիւններու ներկայացուցիչները այս կիրակի առաւօտ ժամը 10ին Ֆլորիա ճաշարանը, 61 Rue Mr. le Prince: Օրակարգ՝ զեկոյց գործադիր մարմնոյ:

Զ. Ե. Ռ. Միութեան Փարիզի Վահագն գրադարանին դասախօսութիւն այսօր հինգշաբթի երեկոյ, ժամը 9ին Ֆլորիայի մէջ: Կը դասախօսէ Պ. Եր. Տ. Անդրէասեան եղիշէի մասին: Մէկ ժամ սինէմա: Կը հրաւիրուին անդամներն ու համակիրները:

ԱՆԻԷՌ Պուա-Քոլոմպի Զ. Ե. Ռ. Միութեան ընդհանուր ժողովը վաղը երեկոյ ժամը 8.30ին սովորական հաւաքատեղի:

ՆՈՒՊԱՐԵԱՆ Մատենադարանի յառաջիկայ բանախօսութիւնը՝ վաղը ցերեկէ վերջ ժամը 4ին: կը խօսի Պ. Ռուբէն Բերբերեան, նիւթ ունենալով «Հայ մշակոյթի հանճարը երեք շարունակական սերունդի մէջ (Պատկանեաններու տոհմը)»:

ՆԿԱՏԻ առնելով ներկայ անգործութեան տագնապը Մարսէյլի Քղիի Հայր. Միութեան վարչութիւնը ժողովի կը հրաւիրէ անդամ եւ ոչ-անդամ բոլոր Քղիցիները այս կիրակի կէսօրէ վերջ ժամը 2ին, 14 Rue Colbert (Bar Tabacsի) սրահը: Եթէ այս անգամ ալ ներկաները մեծամասնութիւն չկազմեն վարչութիւնը ինքնաբերաբար պիտի յանձն առնէ բոլոր հարցերը կարգադրել: (կնիք)

Հայ Արհեստաւորաց Միութեան

## ԳԱՅԼԻԿՆԵՐՈՒ ՑԵՐԵԿՈՅԹԸ

Այս կիրակի ժամը 2.30ին Salle de la Démocratieի մէջ 38 Bld. Raspail, Métro Sevres Babylone.

Մուտք 5 եւ 2.50 ֆրանք

## ԵԼԵԿՏՐԱԿԱՆ ՋԵՏԵՂՄԱՆՑ ՄԱՍՆԱԳԷՏ

Կը կատարէ ամէն տեսակ ելեկտրական զետեղումներ եւ աշխատանքներ:

Գրել՝ Kumalianի

11 Rue Bisson, Paris (20)

## ՄԱՍՆԱԳԷՏ ԲԺԻՇԿՆԵՐ

96 R. Rivoli, մէթ. Շաթլէ: Արմատ. եւ նոր մէթոտ. դարմ. արանց եւ կանանց մորթի, արեան, վեներ. հիւանդութ. եւ վարիսի: Ամէն օր 9-12, 2-8, կիր, 9-12:

## ՀԻՒԱՆԴՆԵՐ

Դիմեցէք մասն. բժիշկներուն 123 Bl. Sébastopol, մէթ. Սէն Տընի, Ռէօմիւր: Վեներ. ախտեր, ջերմամիզ., անկարողութիւն, ֆրանկախտ, արեան, մորթի հիւանդութ. արեան և մէզի քննութիւն, քիթի, կոկորդի եւ ականջի ցաւեր: Դարմ. ռէօնթ. եւ անդրմանիշակ. ճառագայթ. Աժիւրանս սօսիալի հիւնդն. Ամէն օր 9 12 եւ 2-8: Կիր. 9-12: Ակնաբուժ.— Խորհր. և դարմանում ամէն օր 9 12:

EMPIRE Մեւզիք-Հօլ՝ 37 Av. Wagram

## ԲԺՇԿ. ԵՒ ՎԻՐԱԲՈՒԺԱԿԱՆ ԴԱՐՄԱՆԱՏՈՒՆ

10 Rue Beaugrenelle, Paris (15)

Մէթրօ՝ Beaugrenelle

Միզանցքի, փրոսթաթի, մորթի, արիւնի, կանանց հիւանդութիւններ եւ ֆրանկախտ: Ամէն օր ժ. 10—12 եւ 3-9: կիր. եւ տօն օրեր 10-12:

IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H STEPHAN

մտադիր է իշխանութեան գլուխ մնալու, մինչեւ որ վերջնապէս կարգադրուի Հնդկաստանի հարցը։

Իր կարգին, Հէնտրրսըն՝ արտաքին նախարարը, համոզուած ըլլալով թէ աւելի քան երբեք զինաթափութեան համար նպաստաւոր պայմաններ ստեղծուած են, մտադրած է հետապնդել ուժգնօրէն Լոնտոնի նաւային խորհրդաժողովին ձեռնարկը։

## Հ. Յ. Դ. ԵՒՐՈՊԱՅԻ ԿԵԴՐ. ԿՈՄԻՏԷՆ

ընդհ.ժողովի կը հրաւիրէ Փարիզի և շրջաններու բոլոր ընկերները անխտիր այս կիրակի կէսօրէ վերջ ժամը ճիշդ 2ին, 120 Պուլվառ Պէլվիլի սրճարանին վերնայարկը։

Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է։

Զեկոյցներ.— ՅՈՒՆԱՀԱՅ ԳԱՂՈՒԹԻ ՄԱՍԻՆ՝ ՇԱՒԱՐՇ ՄԻՍԱՔԵԱՆ եւ ՍՈՒՐԻՈՅ ՄԱՍԻՆ՝ Վ. ՓԱՓԱԶԵԱՆ։

## ՄԱՐՍԷՅԼԻ Հ. Յ. Դ. ԴՊՐՈՑ

Այսօր Ուրբաթ իրիկուն ժամը 8,30—9.30, Հ. Յ. Դ. ծրագրի մեկնաբանում (Ընկ. Պ. Հիւսեան)։

Ժամը 9.30—10.15, Համառօտ պատմութիւն Նախայեղափոխական շարժումներու (Ընկ. Տ. Թադէոսեան)։

## ՓԵՐՈՒԱՐ 18 ԱԼՖՈՐՎԻԼԻ ՄԷՋ

Ալֆորվիլի Հ. Յ. Դ. Ս. Մինասեան ենթակոմիտէի կողմէ վաղը Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին 128 Rue Etienne Doletի սրահը

կը նախագահէ՝ ՏՕՔԹ. Յ. ՔԻՒԹԻՒՔԵԱՆ

կը խօսին՝ ընկ. ՕՀԱՆ ԿԱՐՕ, ՌԷՆ և Հ. ՈՒԶՈՒՆԵԱՆ

Երգ, արտասանութիւններ եւ անակնկալներ

## «ՓԵՒՐՈՒԱՐ 18» ՍԷՆ ԼՈՒԻ (ՄԱՐՍԷՅԼ) ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Ակնունի ենթակոմիտէի, Ս. Մարկրիթի «Համազասպ» ենթակոմիտէի եւ Ս. Լուի Պատ. միութեան։ Այս կիրակի ժամը 2.30ին։

կը խօսի՝ Ընկ. ՄԱՐՈՒԹԵԱՆ

Գեղարուեստական ճոխ բաժին

## ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

Նախաձեռնութեամբ՝ Հ. Յ. Դ. Վիէնի Ապառաժ խումբին կողմէ

Ղեկավարութեամբ դերասան Մ. ՄԱՐՈՒԹԵԱՆԻ

Այս կիրակի ժամը 2ին Etablissement Réunis (Փասգալի Սինէմայի սրահին մէջ

կը ներկայացուի՝ ՊԱՆՔ ՕԹՕՄԱՆԻ ԳՐԱՒՈՒՄԸ

Տոմսերը կը ծախուին Պ. Այանեանի, Ն. Խաչիկեանի, Ա. Ալէքսանեանի, Մ. Մուրատեանի մօտ եւ հանդէսին օրը թատրոնի կիշէն։

Գիները 4 եւ 3 ֆրանք

## Հ. Մ. Ը. Մ-ի ՍԿԱՈՒՏԱԿԱՆ ՄԵԾ ԵՐԵԿՈՅԹ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Այս կիրակի իրիկուն ժամը 8ին 84 Րիւ Շաբ

Հովանաւորութեամբ ՊԱԼԱՔԵԱՆ սրբազանի

Հրաւիրուած են նաեւ Մարսէյլի ֆրանսական եւ ռուսական Սկաուտական կազմակերպութեան պետերը։

Խմբերգ, արտասանութիւններ, ֆանթէզիներ, բուրգեր, շուէտական մարզանք, սկաուտական կենդանի պատկերներ, եւայլն։

Սկաուտներու կողմէ կը ներկայացուի

ՊԱՇՏՕՆՍ ԽՈՒՄԲԱԼ Է եւ ՀՆԱՐԱՄԻՏ ՎԱՐԶԱԿԱԼԸ (զաւեշտ)

Տոմսեր՝ 10, 7 եւ 5 ֆրանք



## Հ. Յ. Դ.

ՓԱՐԻԶ

ՔԼԻՇԻ, Լըվալուա-Փէրէ եւ Սէնթ Ուան բնակող բոլոր անհատ Դաշնակցականները ստիպողաբար ժողովի կը հրաւիրուին վաղը շաբաթ իրիկուն ժամը 9ին փլաս տը լա Րէբիւպլիքի (Քլիշի) ծխավաճառի սրճարանը:

ԻՍԻ-ԼԷ ՄՈՒԼԻՆՕ Պիյանքուր վռամեան խումբի ժողովը, այսօր ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին ծանօթ հաւաքատեղին: Բացակաները նկատի պիտի առնուին:

ԳԱՒԱՌ

ՄԱՐՍԷՅԼԻ Պատ. միութիւնը ընդհ. ժողովի կը հիաւիրէ Սէն Լու, Պուլվար Օտտօ, Սէնթ Անթուան (Գոմբանի Ֆրէզ) մասնաճիւղերու ընկերները, այս կիրակի 63 Rue de la République.

ՄԱՐՍԷՅԼԻ Իշխան ենթակոմիտէն ժողովի կը հրաւիրէ Արամ, Աղբիւր Սերոբ, եփրեմ խան, Համազասպ եւ վարդգէս խումբերը վաղը իրիկուն ժամը 8ին, ծանօթ հաւաքատեղին: Բացակայողները պատասխանատու պիտի նկատուին,

## ՑՈՒՇԱՏԵՏՐ

ՓԱՐԻԶԻ Հայ Գործազուրկներու Օգնող Մարմինը ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր միութիւններու ներկայացուցիչները այս Կիրակի առաւօտ ժամը 10ին Ֆլորիա ճաշարանը, 61 Rue Mr. le Prince։ Օրակարգ՝ զեկոյց գործադիր մարմնոյ։

ԱՆԻԷՌ Պուա-Քոլոնպի Զ. Ե. Ո. Միութեան ընդհանուր ժողովը այս երեկոյ ժամը 8.30ին սովորական հաւաքատեղին:

ՆԿԱՏԻ առնելով ներկայ անգործութեան տագնապը Մարսէյլի Քղիի Հայր. Միութեան վարչութիւնը ժողովի կը հրաւիրէ անդամ եւ ոչ-անդամ բոլոր Քղիցիները այս կիրակի կէսօրէ վերջ ժամը 2ին, 14 Rue Colbert (Bar Tabacsի) սրահը:

Եթէ այս անգամ ալ ներկաները մեծամասնութիւն չկազմեն վարչութիւնը ինքնաբերաբար պիտի յանձն առնէ բոլոր հարցերը կարգադրել: (կնիք)

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Կը փնտռեմ եղբայրներս Սասունի Ահարոնք գիւղացի Յովհաննէս, Կարապետ եւ Պօղոս Շահինեան, որոնք ընդհ. պատերազմէն առաջ կը գտնուէին Տիգրանակերտի Հուսայնան գիւղը։ Կրտսեր եղբայրս Արմենակ 1914ին կ'աշխատէր Բէմախի աղահանքներուն մէջ։ Մինչեւ այսօր իրենց մասին լուր չկայ։ Իրենց հասցէն գիտցողներէն կը խնդրուի իմացնել Շահինեան Մկրտիչի 96 bis rue de la Tour-Billy, Argenteuil, (S. et O.) France։ Ճշգրիտ լուր տուողին 500 ֆրանք նուէր։

— Կը փնտռուի ընիկ Մարաշցի Նաթան Մոմճեան եւ իր կինը Ռոզա Մոմճեան։ 3 տարի առաջ կը գտնուէին Ardoise գիւղը (Gard)։ Այժմ կը գտնուին Փարիզ կամ շրջանները։ Իմացնել Աւետիս Շիրոյեանի, Maison Palmier, Grand'Rue, Bollène, (Vaucluse).



IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS

208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H STEPHAN

## Վանտէրվէլտ եւս դատուեցաւ էր

*Մոսկուայի դատավարութեան առթիւ բոլշեւիկեան թերթ մը կը գրէ թէ, ամբաստանեալները աթոռին վրայ նստելու էր նաեւ Բ. Միջազգայինը՝ Վանտէլվիլտի գլխաւորութեամբ։ Այս դատը կը գրէ թերթը, դիմակը պատռեց Բ. Միջազգայինի որ ամէն բանէ առաջ կը մտահոգուի արտաքին միջամտութեան կազմակերպութեամբ։*

## Խորհրդային Ռուսիոյ դէմ

*Բոլշեւիկները փաճառամարտ (տըմփինկ),լըջօրէն կը մտահոգէ աշխարհի մնացեալ մասը։ Լոնտոնի մը մէջ, առեւտուրի պաշտպանութեան Միութիւնը, հաւաքոյթի մէջ քուէարկեց բանաձեւ մը, որով կը բողոքէ Խորհրդային միութեան աշխարհի դէմ բացած տնտեսական պայքարին առթիւ եւ ցաւ կը յայտնէ որ անգլիական կառավարութիւնը որ ո՛չ մէկ միջոցի կը դիմէ արգելքի համար ռուսական ապրանքներու ներածումը եւ կը պահանջէ կառավարութենէն որ վերջ դնէ Ռուսիոյ հանդէպ իր բռնած նպաստաւոր վերաբերումին։*

*Պելկրատի մէջ եւս, ճարտարագործներու ընկերակցութիւնը պահանջ ներկայացուց կառավարութեան որ խստիւ արգիլէ ռուսական ներածումները եւ առայդ, օրինական միջոցներ կիրարկէ, փայտի առեւտուրը որ այնքան կարեւոր է Աւստրիոյ, Սերպիոյ Ռումանիոյ եւ Չեխօսլովաքիոյ համար, շլատուած է խորհր. փաճառամարտին հետեւանքով։*

*Նոյն Ռումէն կառավարութիւնը արգիլեց ռուսական արտադրութիւններու անցքը ռումանական նաւահանգիստներէն։*

## Միջադէպ Յոյնեւպուլկար սահմանին վրայ

*Շաբաթ իրիկուան դէմ, Տրամայի մօտերը, յոյնեւպուլկար սահմանագլուխին վրայ, յոյն եւ պուլկար սահմանապահ զօրքերը կրակ բացին իրարու վրայ։ Միջադէպին պատճառ յոյց կըտրուի պուլկար քոմիթէճիներու փորձը՝ յունական հող մտնելու։ Զօրքերը հինգ ժամ անընդհատ կրակ տեղացին իրարու վրայ եւ կրակը դադրեցուցին յոյն եւ պուլկար հրամանատարներու միջամտութեամբ։ Քննութիւն բացուած է երկու կողմէ։*

## Զինուորական դաւ մը Ուքրանիոյ մէջ

*Չեկան ձեռնարկած է իր իրաւասութեան տակ գտնուող երկիրներուն մէջ փնտռել ու երեւան հանելուզանազան տեսակի դաւադրութիւններ։ Վարշաւիայէն տրուած լուրերու համաձայն, Ուքրանիոյ մէջ երեւան ելած է զինուորական հակաբոլշեւիկեան դաւադրութիւն մը, որուն հետեւանքով Չեկան ձերբակալեց 50 սպաներ եւ 18 զինուորներ։ Ասոնցմէ 12 սպաներ դատապարտուած են մահուան եւ անմիջապէս հրացանի բռնուած են։*

*Այս վերջին 15 օրերու ընթացքին, միայն Օտեսայի շրջանին մէջ ձերբակալուած են աւելի քան 7000 անձեր, հակայեղափոխական գործունէութեան մեղադրանքով։ Ուրիշ աղբիւրէ, լուր կը տրուի նաեւ թէ Օտեսայի պահակազօրքին առաջին զօրաբաժինը ըմբոստացած է, Մնացեալ զօրաբաժինները կասկածելի նկատուելով, Մոսկուայէն փութով Օտեսա ղրկուած են յատուկ պատուիրակութիւն մը, գրգռութիւնները հանդարտեցնելու յանձնարարութեամբ։*

*Զրոյց կը շրջի նաեւ թէ Սիպերիոյ աքսորականները եւս, որոնք կարեւոր թիւ մը կը կազմեն եւ որոնց մէջ մեծամասնութիւն են քաղաքական դատապարտեալները կացինով սպաննած են 17 բոլշեւիկ կարեւոր պաշտօնատարներ։ Սիպերիոյ այս աքսորականները կը գործածուին անտառներու մէջ փայտ կտրելու։*



### ՄԱՐՍԷՅԼԻ Հ. Յ. Դ. ԴՊՐՈՑ

*Այսօր Երեքշաբթի ժամը 9.30—9.15 կանոնագրի մեկնաբանում (ընկ. Պ. Հիւսեան)։*

*ժամը 9.30—10.15 Հայդուկային գիտելիքներ (ընկ. Ազգին)։*

### ԵՐԵԿՈՅԹ — ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

*Կազմակերպուած Շավիլի Երկս. Երիտ. Միութեան կողմէ*
*14 Մարտ Շաբաթ իրիկուն ժամը 8.45ին*
Salle Pantin*ի սրահին մէջ, 114* Grand'Rue Chaville

*կը ներկայացուի՝* ՉԱՐՇԸԼԸ ԱՐԹԻՆ ԱՂԱ

*Դիմակաւոր եւ անդիմակ պարահանդէս կէս գիշերէն մինչեւ առաւօտ*
*Թանկօի մրցում, ընտիր նուագախումբ, ճոխ պիւֆէ՝*
*ժողովրդական գիներով — Մուտք 5 ֆրանք*
*Հաղորդակց. միջոց.— Առնել հանրակառք թիւ 1 եւ իջնել* Ancienne Mairie, *Շավիլ։*



## Հ. Յ. Դ.

*ԳԱՒԱՌ*

*ԼԻՈՆԻ Կայծակ ՚խումբի ժողովը՝ վաղը Չորեքշաբթի իրիկուն ժամը 8ին Հ. Յ. Դ. Դրադարանին մէջ։*



## ՑՈՒՇԱՏԵՏՐ

Զ. Ե. Ռ. Միութեան փարիզի վահագն գրադարանի դասախօսութիւնը այս հինգշաբթի իրիկուն ժամը 9ին ֆլորիայի մէջ։ Կը դասախօսէ Պ. Մ. Տէրպէտէրեան *Այնշթայնի մասին*։ Մէկ ժամ սինէմա, *Չիկօնօ*։ Կը հրաւիրուին անդամներն ու համակիրները։



## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

*— Կը փնտռեմ եղբայրներս Սասունի Ահարոնք գիւղացի Յովհաննէս, Կարապետ եւ Պօղոս Շահինեան, որոնք ընդհ. պատերազմէն առաջ կը գտնուէին Տիգրանակերտի Հուսայնան գիւղը։ Կրտսեր եղբայրս Արմենակ 1914ին կ՚աշխատէր Բէմախի աղահանքներուն մէջ։ Մինչեւ այսօր իրենց մասին լուր չկայ։ Իրենց հասցէն գիտցողներէն կը խնդրուի իմացնել Շահինեան Մկրտիչի 96* bis rue de la Tour-Billy, Argenteuil, (S. et O.) France*։ Ճշգրիտ լուր տուողին 500 ֆրանք նուէր։*



Le Gérant H STEPHAN

## ՓԵՏՐ. 18Ը ՊՈՒԼՎԱՌ ՕՏՏՕՅԻ (ՄԱՐՍԷՅԼ) ՄԷՋ

*Նախաձեռնութեամբ Վռամեան ենթակոմիտէի, այս կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին։*

*Կը խօսի՝ Ընկ. ՄԱՐՈՒԹԵԱՆ*

*Գեղարուեստական ճոխ բաժին*

*Մանրամասնութիւնները տեղւոյն վրայ*

## ՓԵՏՐ. 18Ը ՍԷՆ ԼՈՒԻ (ՄԱՐՍԷՅԼ) ՄԷՋ

*Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Ակնունի ենթակոմիտէի եւ մասնակցութեամբ Սէն Մարկրիտի Համազասպ խումբին։*

*Այս Կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին*

*Կը խօսի՝ Ընկ. ԱԶԳԻՆ*

*Գեղարուեստական ճոխ բաժին*

*Մանրամասնութիւնները տեղւոյն վրայ*

## ԵՐԵԿՈՅԹ — ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

*Կազմակերպուած Շավիլի Երկս. Երիտ. Միութեան կողմէ*

*Վաղը Շաբաթ իրիկուն ժամը 8.45ին*

Salle Pantin*ի սրահին մէջ, 114* Grand'Rue Chaville

Կը ներկայացուի՝ ՉԱՐՇԸԼԸ ԱՐԹԻՆ ԱՂԱ

*Դիմակաւոր եւ անդիմակ պարահանդէս կէս գիշերէն մինչեւ առաւօտ Թանկօի եւ տարազի մրցում, ընտիր նուագախումբ, ճոխ պիւֆէ՝ ժողովրդական գիներով* *Մուտք 5 ֆրանք*

*Հաղորդակց. միջոց.— Առնել հանրակառք թիւ 1 եւ իջնել* Ancienne Mairie, *Շավիլ։*



## ՄԱՐՍԷՅԼԻ Հ. Յ. Դ. ԴՊՐՈՑ

*Այս իրիկուն ժամը 8.30 — 9.15 Ծրագրի մեկնաբանում (ընկ. Պ. Հիւսեան)։*

*Ժամը 9.30—10.15 Հայ գրականութեան պատմ. (ընկ. Պ. Մինասեան)։*

## Հ. Յ. Դ.

*ՓԱՐԻԶ*

ՓԱՐԻԶի կոմիտէն ընկ. ընդհ. ժողովի կը հրաւիրէ փարիզի Քրիստափոր, Ռոստոմ, Աղբիւր Սերոբ, Արծիւ եւ Հրազդան խումբերու բոլոր ընկերները այսօր Ուրբաթ իրիկուն ժամը 9ին, 2 Place Chatelet, Սարա Պէրնարի Թատրոնին քովի սրճարանը, մէթրօ՝ Pont Notre Dame. Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է.

ԱՆԻԷՌ - Պուա - Քոլոմպի Զէյթուն կոմիտէի վիճաբանական ընդհ.ժողովը այսօր Ուրբաթ իրիկուն ժամը 8.45ին, 79 Rue des Chambards, Պուա Քոլոմպ, կը հրաւիրուին շրջանի բոլոր ընկերներն ու համակիրները։

*ՊԷԶՕՆ եւ շրջանները բնակող բոլոր անհատ Դաշնակցականները ստիպողաբար ժողովի կը հրաւիրուին այս Կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին Պէզօնի կայարանին դիմացի ծխավաճառի սրճարանը։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը անհրաժեշտ է։*

## ՑՈՒՑԱՏԵՏՐ

ՊԻՅԵԱՆՔՈՒՌԻ Զ. Ե. Ռ. Միութեան ժողովը այսօր Ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին 186 Ave. Verdun, Իսի լէ Մուլինօ։

*ՊԻՅԵԱՆՔՈՒՌԻ Եոզկատի Հայր. Միութեան ժողովը վաղը Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին* 186 Ave. Verdun, *Իսի-լէ Մուլինօ։*

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Կը փնտռուի Մարաշի Զավուշլու Թաղէն Լուսնթագ Սահակեան, հօր անունը՝ Յարութիւն (կառավարական պաշտօնեայ), մօր անունը՝ Խաթուն (վարժուհի), եղբօր անունը՝ Սամուէլ. Տէրզօրի ջարդին 9—10 տարեկան էր եւ կը գտնուէր Շէտտատիյէ: Լուր ունեցողներէն կը խնդրուի իմացնել M. Fernezlianի, 36 Rue de la Part Dieu, Lyon, (Rhône) France.

*— Կը փնտռեմ եղբայրներս Սասունի Ահարոնք գիւղացի Յովհաննէս, Կարապետ եւ Պօղոս Շահինեան, որոնք ընդհ. պատերազմէն առաջ կը գտնուէին Տիգրանակերտի Հուսայնան գիւղը։ Կրտսեր եղբայրս Արմենակ 1914ին կ'աշխատէր Բէմախի աղահանքներուն մէջ։ Մինչեւ այսօր իրենց մասին լուր չկայ։ Իրենց հասցէն գիտցողներէն կը խնդրուի իմացնել Շահինեան Մկրտիչի 96* bis rue de la Tour-Billy, Argenteuil, (S. et O.) France. *Ճշգրիտ լուր տուողին 500 ֆրանք նուէր։*




IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS

208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H. STEPHAN

Ն. ԿՈՐԳԱՆԵԱՆԻ ԲԵՄԱԴՐԱԾ

# "ԵՐԳԻՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ" ՖԻԼՄԸ ԿԸ ՑՈՒՑԱԴՐՈՒԻ

ՍԷՆ ՇԱՄՈՆ.— Այսօր Շաբաթ կէսօրէ վերջ ժամը 4ին Սէնէժա էտէնի մէջ

ՎԻԷՆ.— Մարտ Կիրակի կէսօրէ վերջ ժամը 2.30ին Salle Réunie

ԼԻՈՆ.— 21 Մարտ Շաբաթ եւ 22 Մարտ կիրակի, երեկոյեան ժամը 8.30ին 6րդ Թաղապետարանի սրահը, Rue de Seize. Կը ցուցադրուի միայն երկու օր։

ՎԱՂԱՆՍ.— 22 Մարտ Կիրակի առաւօտ ժամը 10ին Triano Cinémaի մէջ, 21 Bld. Bancel.

Ֆ Ի Լ Մ Ի Ն  Բ Ա Ց Ա Տ Ր Ո Ւ Թ Ի Ւ Ն Ն Ե Ր Ը  Հ Ա Յ Ե Ր Է Ն  Ե Ւ  Ֆ Ր Ա Ն Ս Ե Ր Է Ն

---

Հ. Յ. Դ. ԼԻՈՆԻ ԿՈՄԻՏԷՆ ԸՆԴՀ. ԺՈՂՈՎԻ ԿԸ ՀՐԱՒԻՐԷ

Լիոնի եւ կար տը Վէզի բոլոր ընկերները վաղը կիրակի առաւօտ ժամը 9ին, Գ. Թաղապետարանի ընթերցասրահը։

Ներկայ կ'ըլլայ Կ. կոմիտէի ներկայացուցիչը։

---

## ՓԵՏՐ. 18Ը ՊՈՒԼՎԱՌ ՕՏՏՈՅԻ (ՄԱՐՍԷՅԼ) ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Վռամեան ենթակոմիտէի, վաղը կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին։

Կը խօսի՝ Ընկ. ՄԱՐՈՒԹԵԱՆ

Գեղարուեստական ճոխ բաժին

Մանրամասնութիւնները տեղւոյն վրայ

---

## ՓԵՏՐ. 18Ը ՍԷՆ ԼՈՒԻ (ՄԱՐՍԷՅԼ) ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Ակնունի ենթակոմիտէի եւ մասնակցութեամբ Սէն Մարկրիտի Համազասպ խումբին։

Վաղը Կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին

Կը խօսի՝ Ընկ. ԱԶԳԻՆ

Գեղարուեստական ճոխ բաժին

Մանրամասնութիւնները տեղւոյն վրայ

---

## ԵՐԵԿՈՅԹ — ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Կազմակերպուած Շավիլի Երկս. Երիտ. Միութեան կողմէ

Վաղը Շաբաթ իրիկուն ժամը 8.45ին

Salle Pantinի սրահին մէջ, 114 Grand'Rue Chaville

Կը ներկայացուի՝ ՉԱՐՇԸԼԸ ԱՐԹԻՆ ԱՂԱ

Դիմակաւոր եւ անդիմակ պարահանդէս կէս գիշերէն մինչեւ առաւօտ

Թանկօի եւ տարազի մրցում, ընտիր նուագախումբ, ճոխ պիւֆէ՝ ժողովրդական գիներով Մուտք 5 ֆրանք

Հաղորդակց. միջոց.— Առնել հանրակառք Թիւ 1 եւ իջնել Ancienne Mairie, Շավիլ։

---

## Հ. Յ. Դ.

ՓԱՐԻԶ

Պէբոն եւ շրջանները բնակող բոլոր անհատ Դաշնակցականները ստիպողաբար ժողովի կը հրաւիրուին վաղը Կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին Պէքոնի կայարանին դիմացի ծխավաճառի սրճարանը։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը անհրաժեշտ է։

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— կը փնտռուի Մարաշի Զավուշլու Թաղէն Լուսնթագ Սահակեան, հօր անունը՝ Յարութիւն (կառավարական պաշտօնեայ), մօր անունը՝ Խաթուն (վարժուհի), եղբօր անունը՝ Սամուէլ, Տէրզօրի ջարդին 9—10 տարեկան էր եւ կը գտնուէր Շէտտատիյէ։ Լուր ունեցողներէն կը խնդրուի իմացնել M. Fernezlianի, 36 Rue de la Part Dieu, Lyon, (Rhône). France.

---

## ՑՈՒՇԱՏԵՏՐ

ՊԻՅԵԱՆԲՈՒՌԻ Եռզկատի Հայր. Միութեան ժողովը այսօր Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին 186 Ave. Verdun, Իսի-լէ Մուլինօ։

Սէվրի Մուրատեան վարժարանի յառաջիկայ բանախօսութիւնը՝ վաղը կիրակի ժամը 3ին վարժարանի դահլիճին մէջ (26 Rue Troyon, Sèvres). Նիւթն է՝ «Ցանդէ, իր ժամանակը եւ իր գրական հրաշակերտը»։ Կը խօսի Հ. Յովհ. վրդ. Թորոսեան։

Փոխադր. միջոցներ՝ Métro: Porte St. Cloud, հանրակառք թիւ 1, իջնել Pont de Sèvres.

---

ԿԱՐԱՊԵՏ Եկաւեանէ կը խնդրուի իր հասցէն հաղորդել «Յառաջ»ի խմբագրութեան։

---



---


IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H STEPHAN

յանձնարարութիւններու համար, նոր շրջան մը կը բանան գերմանեւռուս յարաբերութեանց մէջ: Թերթը կը հաստատէ թէ խորհրդային տնտեսութեան եւ հնգամեայ ծրագրի «հրաշալի» յաջողութիւնն ու զարգացումը, ինչպէս նաեւ 160 միլիոննոց երկրի մը գնման կարողութիւնը խոր տպաւորութիւն ձգած են գերման գործատէրերուն վրայ, որոնք վերջերս ուսումնասիրական ճամբորդութիւն մը կատարեր էին Ռուսիոյ մէջ, եւ թէ վերջին այս բանակցութիւնները առաջին քայլերը կը կազմեն լուրջ եւ տեւական աշխատակցութեան մը Գերմանիոյ եւ Ռուսիոյ միջեւ: Բոլշեւիկեան թերթը կ'եզրակացնէ.— Ահա թէ ինչու ռուս տնտեսագէտները մտածեցին գերմանեւռուս հնգամեայ գործակցութիւն մը, որ պիտի տեւէ հնգամեայ ծրագրի վերջին երկու տարիներու եւ յաջորդ երեք տարիներու ընթացքին: Անհրաժեշտ է Գերմաններէն ստանալ երկարատեւ վարկեր եւ ջնջել Ռուսիոյ դէմ կիրարկուած մասնաւոր գիները»:

Բոլշեւիկեան թերթին այս յօդուածին, գերմանական Վոլֆ գործակալութիւնը կը պատասխանէ.— Քանի մը տարիներու տեւողութեամբ, Գերմանիոյ եւ Ռուսիոյ միջեւ համաձայնութիւններ կնքելու գաղափարը մէջտեղ նետուեցաւ գերման պատգամաւորներու եւ խորհր. ներկայացուցիչներու բանակցութեանց ընթացքին: Բայց, ատկից աւելին, կը մտածուի թէ երկարատեւ գործակցութեան մը պայմանները կրնան ունենալ հետեւանքներ, զորս կարելի չէ նախատեսել:

## Հնդիկ մահմետականները չեն զիջիր

Հնդիկ իշխաններու խորհրդաժողովը կը բացուի այսօր Տէլհիի մէջ: 70է աւելի իշխաններ արդէն հասած են Տէլհի մասնակցելու ժողովին: Մէկ քանի խորհրդակցութիւններ ունեցան օրակարգը պատրաստելու համար ժողովին որ մէկ շաբաթ պիտի տեւէ:

Իշխաններու ներկայացուցիչները առիթ պիտի ունենան հանդիպելու եւ խորհրդակցելու հնդիկ ազգ. խորհուրդի ներկայացուցիչներուն, ինչպէս նաեւ կանտիի հետ, որ Քարաշիի խորհրդաժողովին երթալու համար, պիտի անցնի Տէլհիէն:

Տէլհիի մէջ, Համիսլամական Միութիւնը հաւաքոյթ մը ունեցաւ, եւ քուէարկեց մէկ քանի որոշումներ, որոնք յստակօրէն կը յայտնեն թէ Մահմետականներու հնդկական դաշնակցութեան մասնակցութիւնը կախում ունի իբր փոքրամասնութիւն' իրենց պահանջներու գոհացումէն: Որոշած են չվիճիլ որ եւ է ծրագրի շուրջ որ իրենց չապահովեր 100ին 33ի ներկայացուցչութիւն մը Օրէնսդիր Խորհուրդին մէջ, մեծամասնութիւն Փէնճապի եւ Պէնկալի մէջ եւ իրենց թիւին համապատասխան աթոռներ' միւս նահանգներուն մէջ:

Մահմետականները հաւանութիւն յայտնելէ յետոյ Աղա խանի այն պահանջին զոր ներկայացուցեր էր Լոնտոնի խորհրդաժողովին, Սենտ նահանգը բաժնելու համար Պոմպէյէն, եւ այս տարուան իրենց նախագահը ընտրելէ յետոյ' ցրուեցան:

## ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻՆ ՓՐԿՈՒԹԵԱՆ ՀԱՄԱՐ

### «ՅԱՌԱՋ»Ի ՀԱՐՑԱՐԱՆԸ ԻՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐՈՒՆ

1.— Ի՞նչ գործնական եւ ընդհանուր միջոցներ կ'առաջարկէք հայ մանուկները (5-15 տարեկան) հայ մեծցնելու համար: գոնէ մայրենի լեզուն գրել-կարդալ սորվելու չափ: (Նկատի ունեցէք որ բացի Փարիզի եւ քանի մը քաղաքներու դասընթացքներէն եւ Մարսիլիոյ շրջակայ գիւղերու եւ արուարձաններու դպրոցներէն, չունինք ուրիշ կրթարան):

2.— Գիտէ՞ք միջոց մը որով կարելի ըլլայ հայկական պատմութիւնը եւ գրականութիւնը սորվեցնել տեղական դպրոցներ գացող հայ մանուկներուն:

3.— Գաղութին մաճամասնութիւնն ըլլալով բանուորներ եւ բանուորուհիներ (յաճախ այր եւ կին գործի կ'երթան), ի՞նչպէս կարելի է պահել հայերէն խօսելու վարժութիւնը, թէ՛ անչափահասներու եւ թէ չափահասներու համար:

4.— Հայ թերթերը ի՞նչպէս կրնան օգնել այս գործին:

5.— Հայկական բազմազան միութիւններէն ո՞րը կրնայ աւելի օգտակար ըլլալ այս գործին:

6.— Նիւթական ի՞նչ միջոցներ կ'առաջարկէք, ձեր թելադրութիւնները իրականացնելու համար:

*Պատասխանները գրել կարճ եւ ամփոփ, առանց աւելորդ խորհրդածութեանց: Կեդրոնանալ տրուած հարցումներուն վրայ: Բայց եթէ ունիք չնախատեսուած հարցեր, գրել առանձին:*



### ՄԱՌՇԻԻ ԱՌԵՒՏՐԱԿԱՆՆԵՐՈՒՆ

Բուրդէ pull over (փուլ օվէր) եւ ժիլէ, քոթօն պուքլըթէի ամէնէն լաւ տեսակը ֆրիզէթ, մասնաւոր կը պատրաստուի, անմրցելի գիներով մաքուր եւ խնամուած աշխատանք: Մեծաքանակ եւ հատով, դիմեցէք' Hagop Dertoumayanի, 29 Allée de la Seine, Issy-les Moulineaux, (Seine).



### ՓԵՏՐՈՒԱՐ 18 ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

*Կազմակերպուած Հ. Յ. Դ. Փարիզի կոմիտէի կողմէ*
*Մարտ 28ին ժամը 8.30էն* Salle Place pourFêteի *մէջ*
95 Bld. Auguste Blanqui    *մէթրօ* Glacière

### ՄԱՐՍԷՅԼԻ Հ. Յ. Դ. ԴՊՐՈՑ

*Այսօր Երեքշաբթի իրիկուն ժամը 8.30—9.15, կանոնագրի մեկնաբանում' (ընկ. Պ. Հիւսեան):*

*Ժամը 9.30 — 10.15, Հայաստանի աշխարհագրութիւն' (ընկ. Ազգին):*







### Հ. Յ. Դ.

*ԳԱՒԱՌ*

*ԼԻՈՆԻ Համազասպ խումբի ժողովը' վաղը երեկոյ ժամը 8.30ին, 181* Cours Lafayette. Café de la Gare *սրահին մէջ:*

## ՑՈՒՑԱՏԵՍՏ

Զ. Ե. Ռ. Միութեան Փարիզի վաճառն գրադարանին դասախօսական ժողովը այս Հինգշաբթի իրիկուն ժամը 9ին, Ֆլոբիայի մէջ: կը դասախօսէ Տօքթ. Գ. Ամատեան, նիւթը' *Ալքոլամոլութիւնը իբրեւ ընկերային աղէտ:* Մէկ ժամ սինէմա: կը հրաւիրուին ընկերներն ու համակիրները:

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Նաւասարդեան, Ամասեան, Թէրզեան, Եզեկիէլեան եւ Վարդան ընտանիքները շնորհակալութիւն կը յայտնեն ամէն անոնց (հայ եւ ֆրանսացի) որոնք անձամբ կամ նամակով ցաւակցութիւն յայտնեցին ՎԱՐԴՈՒՀԻ (ԿԻԼԻԱ) ՆԱՒԱՍԱՐԴԵԱՆԻ մահուան առթիւ,

*Տրակինեան 14 Մարտ 1931*

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— կը փնտռուի Մարաշի Զավուշլու թաղէն Լուսնթագ Սահակեան, հօր անունը' Յարութիւն (կառավարական պաշտօնեայ), մօր անունը' Խաթուն (վարժուհի), եղբօր անունը' Սամուէլ, Տէրզօրի ջարդին 9—10 տարեկան էր եւ կը գտնուէր Շէտտատիյէ: Լուր ունեցողներէն կը խնդրուի իմացնել M. Fernezlianի, 36 Rue de la Part Dieu, Lyon, (Rhône). France.

— կը փնտռուի Կէյվէի Միջագիւղէն Շնորհիկ Սէմէրճեան: Լուր առնուած է թէ 1927ին կը գտնուէր Պոլիս, իմացնել իր քրոջ Քնարիկ Սէմէրճեանի, 72 Rue Jean Jaques Rousseau, Issy - les - Moulineaux, (Seine) France.

— *Կը փնտռեմ եղբայրներս Սասունի Ահարոնք գիւղացի Յովհաննէս, Կարապետ եւ Պօղոս Շահինեան, որոնք ընդհ. պատերազմէն առաջ կը գտնուէին Տիգրանակերտի Հուսայնան գիւղը: Կրտսեր եղբայրս Արմենակ 1914ին կ'աշխատէր Բէմախի աղահանքներուն մէջ: Մինչեւ այսօր իրենց մասին լուր չկայ: Իրենց հասցէն գիտցողներէն կը խնդրուի իմացնել Շահինեան Մկրտիչի 96* bis rue de la Tour-Billy, Argenteuil, (S. et O.) France: *Ճշգրիտ լուր տուողին 500 ֆրանք նուէր:*










IMPRIMERIE - **MASSIS** - EDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H. STEPHAN

## Տնտեսական խորհրդաժողովը

Տնտեսական խորհրդաժողովը սկսաւ իր աշխատանքներուն ժընեւի մէջ, ճշդելու համար 1930 մարտին ընդունուած առեւտրական պայմանագրութեան կիրարկման թուականը: Ցարդ 12 երկիրներ միայն վաւերացուցած ըլլալով պայմանագրութիւնը, կացութիւնը գոհացուցիչ չնկատուեցաւ: Նախագահը իր բացման ճառին մէջ եզրակացուց.— Եթէ խորհրդաժողովը չյաջողի գտնել ելք մը, Ազգերու Դաշնակցութեան գործին, եւ մանաւանդ, եւրոպական երկիրներու տնտեսական մերձեցման աշխատանքներուն վրայ, շատ ծանր անդրադարձում պիտի ունենայ»:

Պայմանագրութիւնը վաւերացնող 12 երկիրներու ներկայացուցիչները յայտնեցին թէ ներկայ պայմաններով տրամադիր չեն զայն կիրարկելու, առանց որոշ սահմանափակումներու: Անոնց այս յայտարարութենէն յետոյ, խորհրդաժողովը քննութեան առաւ Նախագահին մէկ առաջարկը՝ որով կը թելադրէ առժամաբար կիրարկել պայմանագրութիւնը, պայմանաւ սակայն որ մինչեւ որոշ թուական մը եթէ բոլոր մասնակից պետութիւնները չվաւերացնեն, մնացեալ պետութիւնները զերծ միան ամէն պարտաւորութենէ:













Հ. Յ. Դ. ԵՒՐՈՊԱՅԻ ԿԵԴՐ. ԿՈՄԻՏԷԻՆ ԴԱՍԱԽՕՍԱԿԱՆ—ՎԻՃԱԲԱՆԱԿԱՆ ընդհ. ժողովը Փարիզի եւ շրջաններուն համար, այս Ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին, 2 Փլաս Շաթլէ, Քաֆէ Քոնթուառի գետնայարկը (Սառա Պէռնարի թատրոնին կից (մէթրօ Շաթլէ) կը խօսի ընկ. ՎԱՀԱՆ ՓԱՓԱԶԵԱՆ

## ՄԱՐՍԷՅԼԻ Հ. Յ. Դ. ԴՊՐՈՑ

Այս Ուրբաթ իրիկուն ժամը 8.30—9.15, ծրագրի մեկնաբանում՝ (ընկ. Պ. Հիւսեան):

ժամը 9.30 — 10.15, մարդկային յեղաշրջման պատմութ. (ընկ. Բ. Գավէզեան):

## ԱՊՐԻԼ ՏԱՍՆԸՄԷԿ

Զ. Ե. Ռ. ՄԻՈՒԹԻՒՆԸ ԿԸ ՏՕՆԷ

ՓԱՐԻԶ.— 26 Ապրիլ կիրակի իրիկուն Salle d'Horticultureի մէջ

ԼԻՈՆ.— 18 Ապրիլ, Շաբաթ իրիկուն:

Մանրամասնութիւնը յաջորդաբար

## ԵՐԵԿՈՅԹ — ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Ա. Ե. Հ. կարմիր Խաչի Ալֆորվիլի մասնաճիւղի կողմէ

Կ. ԽԱՉԻ ՔՍԱՆԱՄԵԱԿԻ ԱՌԹԻՒ

Այս Շաբաթ գիշեր ժամը 9էն մինչեւ լոյս

Quai Blanqui (մեծ կամուրջի դէմը) Ալֆորվիլ

կը նախագահէ ՏՕՔԹ. Յ. ՔԻՒԹԻՒՔԵԱՆ

Բանախօսութիւն,30 մանուկներու մասնակցութեամբ տեղի կ'ունենան հայկական ֆանթէզի պարեր, երգ, արտասանութիւն եւ անակնկալներ: Ընտիր ճաշ, մատչելի պիւֆէ:

Մուտք 5 ֆրանք

## MATINÉE-PROLONGÉE

ԱՂՔԱՏԱԽՆԱՄԻ ՕԺԱՆԴԱԿ ՄԻՈՒԹԵԱՆ ԿՈՂՄԷ

19 Ապրիլ կիրակի կէսօրէ վերջ ժամը 4—12

Hôtel Mac Mahon, 29 Ave. Mac Mahon, մէթրօ՝ Etoile

ՊԱՐ. ATTRACTION եւ BRIDGE — ձոխ պիւֆէ

## ՕՐ. ՄԱՐԳԱՐԻՏ ԲԱԲԱՅԵԱՆԻ

Աշակերտներու երաժշտական երեկոյթը տեղի կ'ունենայ

Այս Ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին

Salle des Quatuors Gaveau, 45 rue La Boëtie (8)

Մուտքը 4 ֆրանք

Ն. Գ. Բ. — ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

## ՊԱՆԴՈՒԽՏԻ ԿԵԱՆՔԷՆ

ՀՐԱՆԴԻ (ՄԵԼՔՈՆ ԿԻՒՐՃԵԱՆ)

(Բ. հրատարակութիւն «ՆԱՀԱՏԱԿ ԳՐՈՂՆԵՐՈՒ ԲԱՐԵԿԱՄՆԵՐ»ՈՒ)

հեղինակին նկարով, գեղատիպ կողքով՝ Մ. Քէպապճեանի կենսագրական ամփոփ յառաջաբանով եւ գեղեցիկ տպագրութեամբ:

գինն է Ֆրանսայի, ֆրանս. գաղութներու եւ Պալքաններու համար 20 ֆր. միւս երկիրները 25 ֆր. կամ 1 տոլար,

Ստանալու համար դիմել «Յառաջ»ի վարչութեան՝ Լ. Գեւոնեանի 235 Fbg. St. Martin, Paris (10).

## Հ. Յ. Դ.

ՓԱՐԻԶ

ԱՆԻէՌԻ, Պուա-Քոլոմպի Զէյթուն կոմիտէի վիճաբանական ժողովը այս Ուրբաթ իրիկուն ժամը 8.45ին, 79 Rue des Chambards, Պուա Քոլոմպ, կը հրաւիրուին բոլոր ընկերներն ու համակիրները,

ԳԱՒԱՌ

ԼԻՈՆի Համազասպ խումբի ժողովը՝ այս երեկոյ ժամը 8.30ին, 181 Cours Lafayette. Café de la Gare սրահին մէջ:

ԼԻՈՆԻ կոմիտէն սախպողաբար ժողովի կը հրաւիրէ Հ. Յ. Դ. պատ. միութեան բոլոր անդամները վաղը իրիկուն ժամը 8.30ին Գրադարանի սրահը (11 րիւ տը նուար), Անդամներու ներկայութիւնը պարտաւորիչ է, ներկայանալ անդամատետրով:

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

Զ. Ե. Ռ. Միութեան փարիզի վահագն գրադարանին դասախօսական ժողովը վաղը Հինգշաբթի իրիկուն ժամը 9ին, ֆլորիայի մէջ: կը դասախօսէ տօքթ. Գ. Ամատեան, նիւթը՝ Ալքոլամոլութիւնը իբրեւ ընկերային աղէտ, մէկ ժամ սինէմա: կը հրաւիրուին ընկերներն ու համակիրները:

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— կը փնտռուի Մարաշի Զավուշլու թաղէն Լուսնթագ Սահակեան, հօր անունը՝ Յարութիւն (կառավարական պաշտօնեայ), մօր անունը՝ Խաթուն (վարժուհի), եղբօր անունը՝ Սամուէլ, Տէրզօրի ջարդին 9—10 տարեկան էր եւ կը գտնուէր Շէյտաատիյէ: Լուր ունեցողներէն կը խնդրուի իմացնել M. Fernezlianի, 36 Rue de la Part Dieu, Lyon, (Rhône). France.

— կը փնտռուի կէյվէի Միջագիւղէն Շնորհիկ Սէմէրճեան: Լուր առնուած է թէ 1927ին կը գտնուէր Պոլիս, իմացնել իր քրոջ Քնարիկ Սէմէրճեանի, 72 Rue Jean Jeaques Rousseau, Issy - les - Moulineaux, (Seine) France.

— Դպրոցասէրի սանուհիներէն՝ Մարիամ Ճօշկունեան կը փնտռէ իր հօրեղբայրը՝ Աֆիոն Գարահիսարցի Արմենակ Ճօշկունեան, զոր կորսնցուցած է Իզմիրի դէպքերէն յետոյ եւ այժմ կը կարծուի թէ կը գտնուի Փարիզ կամ Մարսէյլ իբր շոգեկառքի պաշտօնեայ: Իմացնել École Tebrotzassère, 1 Bld. du Nord, Le Raincy, (S. et O.).






IMPRIMERIE - MASSIS - EDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H. STEPHAN

**Հ. Յ. Դ. ԵՒՐՈՊԱՅԻ ԿԵԴՐ. ԿՈՄԻՏԷԻՆ ԴԱՍԱԽՕՍԱԿԱՆ—ՎԻՃԱԲԱՆԱԿԱՆ** *ընդհ. ժողովը Փարիզի եւ շրջաններուն համար, վաղը Ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին, 2 Փլաս Շաթլէ, Քաֆէ Քոնթուառի գետնայարկը (Սառա Պէռնարի Թատրոնին կից (մէթրօ Շաթլէ)*

*կը խօսի ընկ. ՎԱՀԱՆ ՓԱՓԱԶԵԱՆ*

### ՄԱՐՍԷՅԼԻ Հ. Յ. Դ. ԴՊՐՈՑ

*Վաղը Ուրբաթ իրիկուն ժամը 8.30—9.15, ծրագրի մեկնաբանում' (ընկ. Պ. Հիւսեան):*

*ժամը 9.30 — 10.15, մարդկային յեղաշրջման պատմութ. (ընկ. Բ. Գավէզեան):*

## „ՓԵՏՐՈՒԱՐ 18„ ԿԸ ՏՕՆՈՒԻ

*ՄԱՐՍԷՅԼ.— Այս Շաբաթ իրիկուն ժամը 9ին Սալօն Շափի մէջ, 84 րիւ Շաբ:*

*կը խօսին' ընկերներ Պ. ՀԻՒՍԵԱՆ եւ ԱԶԳԻՆ*

*կ'արտասանեն'* ընկերներՄարութեան, Մ. Գաբրիէլեան, Յ. Ուզունեան

*Ծոխ գեղարուեստական բաժին Մուտքը ազատ է*

*ԿԱՐՏԱՆ.— Այս կիրակի ժամը 2.30ին, Դաշնակցութեան Տան մէջ կը խօսի' Ընկ. ԱԶԳԻՆ*

*Ծոխ գեղարուեստական բաժին*

*ՀՐԱՊԱՐԱԿԱՅԻՆ ԲԱՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ ՆԻՍԻ ՄԷՋ*

*կազմակերպուած Հ. Յ. Դ. Մատլէնի Անդրանիկ խումբի կողմէ այս Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին* 364 Bld. de la Madeleine, Bar Cigale*ի* սրահին մէջ:

*կը խօսի' ընկ. Ա. ԱԲՕԵԱՆ*

կը հրաւիրուի Մատլէնի եւ Նիսի Հայ հասարակութիւնը

*Մուտքը ազատ է*

### ՀՐԱՊԱՐԱԿԱՅԻՆ ԲԱՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ ՎԱԼԱՆՍԻ ՄԷՋ

*կազմակերպուած Վալանսի կոմիտէին կողմէ*

Այս կիրակի առաւօտ ժամը 10ին PALACE սինէմային մէջ

*կը խօսի' Ընկ. Ա. ՀԱՆԸՄԵԱՆ*

### ԵՐԵԿՈՅԹ — ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

*Ա. Ե. Հ. Կարմիր Խաչի Ալֆորվիլի մասնաճիւղի կողմէ*

*Կ. ԽԱԶԻ ՔՍԱՆԱՄԵԱՆԻ ԱՌԹԻՒ*

*Այս Շաբաթ գիշեր ժամը 9էն մինչեւ լոյս*

Quai Blanqui (*մեծ կամուրջի դէմը*) *Ալֆորվիլ*

*կը նախագահէ ՏՕՔԹ. Յ. ՔԻՒԹԻՒՔԵԱՆ*

*Բանախօսութիւն,30 մանուկներու մասնակցութեամբ տեղի կ'ունենան հայկական ֆանթէզի պարեր, երգ, արտասանութիւն եւ անակնկալներ: Ընտիր ճաշ, մատչելի պիւֆէ:*

*Մուտք 5 ֆրանք*

**ԳՐԱԿԱՆ ԱԿՈՒՄԲ** Այս Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին, Պ. Ա. Ջամալեան պիտի կարդայ «Հայը հայ պահելու» բանաձեւը, յետոյ պիտի խօսի Պ. Ստ. Քոչարեան նիւթ ունենալով' «Արեւմտահայ եւ Արեւելահայ հնչաբանութիւն»ը: Այսուհետեւ ակումբի անփոփոխ եւ մշտական հասցէն.— Sté. Byothéraphitique, 131 Rue Cambronne, Métro Vaugirard, Autob.Ag եւ X, Tram. 123(4:

Ն. Գ. Բ. ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

## ՊԱՆԴՈՒԽՏԻ ԿԵԱՆՔԷՆ

ՀՐԱՆԴԻ (ՄԵԼՔՈՆ ԿԻՒՐՃԵԱՆ)

(Բ. հրատարակութիւն «ՆԱՀԱՏԱԿ ԳՐՈՂՆԵՐՈՒ ԲԱՐԵԿԱՄՆԵՐ»ՈՒ)

հեղինակին նկարով, գեղատիպ կողքով' Մ. Քէպապճեանի կենսագրական ամփոփ յառաջաբանով եւ գեղեցիկ տպագրութեամբ:

գինն է ֆրանսայի, ֆրանս. գաղութներու եւ պալքաններու համար 20 ֆր. միւս երկիրները 25 ֆր. կամ 1 տոլար,

Ստանալու համար դիմել «Յառաջ»ի վարչութեան' Լ. Դեւոնեանի 235 Fbg. St. Martin, Paris (10).



## Հ. Յ. Դ.

*ՓԱՐԻԶ*

ԱՆԻԷՌԻ, Պուա-Քոլոնպի Զէյթուն կոմիտէի վիճաբանական ժողովը վաղը Ուրբաթ իրիկուն ժամը 8.45ին, 79 Rue des Chambards,Պուա Քոլոնպ, կը հրաւիրուին բոլոր ընկերներն ու համակիրները,

ԱԼՖՈՐՎԻԼԻ Ս. Մինասեան ենթակոմիտէի ընդհ. ժողովը այս կիրակի ժամը 2.30ին, 1 Bld. Carnot, Ալֆորվիլ:

*ԳԱՒԱՌ*

ԼԻՈՆԻ կոմիտէն սախպողաբար ժողովի կը հրաւիրէ Հ. Յ. Դ. պատ. միութեան բոլոր անդամները այս իրիկուն ժամը 8.30ին գրադարանի սրահը (11 րիւ տը նուար), Անդամներու ներկայութիւնը պարտաւորիչ է, ներկայանալ անդամատետրով:

## ՑՈՒՇԱՏԵՏՐ

Զ. Ե. Ռ. Միութեան փարիզի վահագն գրադարանին դասախօսական ժողովը այսօր Հինգշաբթի իրիուն ժամը 9ին, Ֆլոըէյայի մէջ: կը դասախօսէ Տօքթ. Գ. Ամատեան, նիւթը' *Ալքոլամոլութիւնը իբրեւ ընկերային աղէտ:* մէկ ժամ սինէմա: կը հրաւիրուին ընկերներն ու համակիրները:

*Ա. Ե. Հ. Կ. Խաչի Փարիզի Մանուկներու Պաշտպանութեան մասնաճիւղի ընդհ. ժողովը այս կիրակի կէս օրէ յետոյ ժամը 3ին: Օրակարգ.— 1. Պ. Վ. Համբարձումեան կը խօսի «Հայ կնոջ իրաւունքներու մասին», Հ. Կ. Խաչի 20 ամեակը, ընթացիկ հարցեր:*

*Կը խնդրուի բոլոր անդամուհիներէ եւ համակիրներէն ներկայ ըլլալ որոշեալ ժամուն:*

## ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

*ՍՏԱՑԱՆՔ*

*Ռընած, Գործ.— 152 ֆրանք*

*Պէլֆոռ, Ե. Տ.— 36,*

*Ռոման, Գործ.— 189.50,*

*Րիկա, Կովկ. Միութիւն.— 100,*

*Պերլին, Մ. Ա.— 122,*

*Փարիզ, Լ. Տ.— 10,*

*Անիէռ, Ամիր.— 15,*

*Ժընեւ, Տիլ.— 500,*

*Սէն Մօռ, Քուստ.— 35,*

*Վալանս, Գործ.— 380.70,*

*Սէն Թ'էթիէն, Յակոբեան.— 50,*

*Փարիզ, Լ. Ե.— 35,*

*Լա Սիօթա, Գործ.— 90*

*Քլերմոն Ֆէրան, Գ. Թ.— 35,*

*Փարիզ, Օր. Պետր.— 35,*

IMPRIMERIE - MASSIS - EDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H STEPHAN



## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— կը փնտռուի Մարաշի Զավուշլու Թաղէն Լուսնթագ Սահակեան, հօր անունը' Յարութիւն (կառավարական պաշտօնեայ), մօր անունը' Խաթուն (վարժուհի), եղբօր անունը' Սամուէլ, Տէրզօրի ջարդին 9—10 տարեկան էր եւ կը գտնուէր Շէտտատիյէ: Լուր ունեցողներէն կը խնդրուի իմացնել M. Fernezlian*ի*, 36 Rue de la Part Dieu, Lyon, (Rhône). France.

— կը փնտռուի Կէյվէի Միջագիւղէն Շնորհիկ Սէմէրճեան: Լուր առնուած է թէ 1927ին կը գտնուէր Պոլիս, իմացնել իր քրոջ Քնարիկ Սէմէրճեանի, 72 Rue Jean Jeaques Rousseau, Issy - les - Moulineaux, (Seine) France.

*— Դիլրոցասէրի սանուհիներէն' Մարիամ Ծօշկունեան կը փնտռէ իր հօրեղբայրը' Աֆիոն Գարահիսարցի Արմենակ Ծօշկունեան, զոր կորսնցուցած է Իզմիրի դէպքերէն յետոյ եւ այժմ կը կարծուի թէ կը գտնուի Փարիզ կամ Մարսէյլ իբր շոգեկառքի պաշտօնեայ, Իմացնել'*École Tebrotzassère, 1 Bld. du Nord, Le Raincy, (S. et O.).

*— Սուրէն Փանոս... փնտռէ իր եղբայր... (Ծանօ), Արիստակէս ... րերը' Ջմրուխտ եւ ... Փանոսեան, որոնք ը... տերագմին անյայտ... Իմացնել Յառաջի վ...*

**Հ. Յ. Դ. ԵՒՐՈՊԱՅԻ ԿԵԴՐ. ԿՈՄԻՏԷԻՆ ԴԱՍԱԽՕՍԱԿԱՆ—ՎԻՃԱԲԱՆԱԿԱՆ**
*ընդհ. ժողովը Փարիզի եւ շրջաններուն համար, այսօր Ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին, 2 Փլաս Շաթլէ, Քաֆէ Քոնթուառի գետնայարկը (Սառա Պէռնարի թատրոնին կից (մէթրօ Շաթլէ)*
*կը խօսի ընկ. ՎԱՀԱՆ ՓԱՓԱԶԵԱՆ*

## ՄԱՐՍԷՅԼԻ Հ. Յ. Դ. ԴՊՐՈՑ

*Այսօր Ուրբաթ իրիկուն ժամը 8.30—9.15, ծրագրի մեկնաբանում (ընկ. Պ. Հիւսեան):*
*ժամը 9.30 — 10.15, մարդկային յեղաշրջման պատմութ. (ընկ. Բ. Գավէզեան):*

## „ՓԵՏՐՈՒԱՐ 18„ ԿԸ ՏՕՆՈՒԻ

*Մ Ա Ր Ս Է Յ Լ. — Վաղը Շաբաթ իրիկուն ժամը 9ին Սալօն Շափի մէջ, 84 րիւ Շաբ:*
*կը խօսին՝ ընկերներ Պ. ՀԻՒՍԵԱՆ եւ ԱԶԳԻՆ*
*կ'արտասանեն՝* ընկերներՄարութեան, Մ. Գաբրիէլեան, Յ. Ուզունեան
*Ճոխ գեղարուեստական բաժին* *Մուտքը ազատ է*

■■■■■■■■■■■.

*Կ Ա Ր Տ Ա Ն. — Այս Կիրակի ժամը 2.30ին, Դաշնակցութեան Տան մէջ* *կը խօսի՝ Ընկ. ԱԶԳԻՆ*
*Ճոխ գեղարուեստական բաժին*

■■■■■■■■■■■

*ՀՐԱՊԱՐԱԿԱՅԻՆ ԲԱՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ ՆԻՍԻ ՄԷՋ*
*կազմակերպուած Հ. Յ. Դ. Մատլէնի Անդրանիկ խումբի կողմէ վաղը Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին* 364 Bld. de la Madeleine, Bar Cigaleի սրահին մէջ:
*կը խօսի՝ ընկ. Ա. ԱԲՕԵԱՆ*
կը հրաւիրուի Մատլէնի եւ Նիսի Հայ հասարակութիւնը
*Մ ո ւ տ ք ը ա զ ա տ է*

## ՀՐԱՊԱՐԱԿԱՅԻՆ ԲԱՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ ՎԱԼԱՆՍԻ ՄԷՋ

*կազմակերպուած Վալանսի կոմիտէին կողմէ*
Այս կիրակի առաւօտ ժամը 10ին PALACE սինէմային մէջ
*կը խօսի՝ Ընկ. Ա. ՀԱՆԸՄԵԱՆ*

## Հ. Կ. ԽԱՉԻ 20ԱՄԵԱԿԸ ԿԸ ՏՕՆՈՒԻ

Հովանաւորութեամբ եւ նախագահութեամբ
**Պ. Ա. Ա Հ Ա Ր Ո Ն Ե Ա Ն Ի**
Ապրիլ 19ին կիրակի օր: Մանրամասնութիւնները յաջորդով

## ԵՐԵԿՈՅԹ — ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

*Ա. Ե. Հ. Կարմիր Խաչի Ալֆորվիլի մասնաճիւղի կողմէ*
*Կ. ԽԱՉԻ ՔՍԱՆԱՄԵԱԿԻ ԱՌԹԻՒ*
*Վաղը Շաբաթ գիշեր ժամը 9էն մինչեւ լոյս*
Quai Blanqui (*մեծ կամուրջի դէմը*) *Ալֆորվիլ*
*կը նախագահէ ՏՕՔԹ. Յ. ՔԻԹԻՐՔԵԱՆ*
*Բանախօսութիւն,30 մանուկներու մասնակցութեամբ տեղի կ'ունենան հայկական ֆանթէզի պարեր, երգ, արտասանութիւն եւ անակնկալներ: Ընտիր ճաշ, մատչելի պիւֆէ:*
*Մ ո ւ տ ք 5 ֆ ր ա ն ք*

## ՍԿԱՈՒՏԱԿԱՆ ՑԵՐԵԿՈՅԹ

կազմակերպուած Հ. Մ. Ը. Մ.-ի Պուա Քոլոմպի մասնաճիւղին կողմէ 29 Մարտ կիրակի ժամը 2.30ին Պուա Քոլոմպի Թաղապետական սրահին մէջ:
*կը խօսի՝ Պր. Ե. ՏԷՐ ԱՆԴՐԷԱՍԵԱՆ*
երգ, նուագ, արտասանութիւն եւ սիրուն անակնկալներ
*կը ներկայացուի՝ «ԲԱՆԱԿՈՒՄ ՄԸ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԷՋ»*
*Սկաուտական կեանքէ*

**ԳՐԱԿԱՆ ԱԿՈՒՄԲ** վաղըՇաբաթ իրիկուն ժամը 8.30ին, Պ.Ա. Ջամալեան պիտի կարդայ «Հայը հայ պահելու» բանաձեւը, յետոյ պիտի խօսի Պ. Ստ. Քոչալեան նիւթ ունենալով՝ «Արեւմտահայ եւ Արեւելահայ հնչաբանութիւն»ը: Այսուհետեւ ակումբի անփոփոխ եւ մշտական հասցէն.— Sté. Byothéraphitique, 131 Rue Cambronne, Métro Vaugirard, Autob·Ag եւ X, Tram. 123(4:

Լ Ո Յ Ս Տ Ե Ս Ա Ւ

## Ա. Խ Ա Տ Ի Ս Ե Ա Ն Ի
## "ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ԾԱԳՈՒՄՆ ՈՒ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ„ ԳԻՐՔԸ

Հրատարակութիւն «Նոր Օր»ի Պատկերազարդ 356 էջ
Գին՝ Ֆրանսա եւ գաղութներ 40 ֆր., արտասահման փոստի ծախքով 47 ֆր.: Դիմել «Յառաջ»ի խմբագրատունը Լ. Գեւոնեանի:

Լ Ո Յ Ս Տ Ե Ս Ա Ւ

## Ա Մ Է Ն Ո Ւ Ն Հ Ա Ս Ց Է Ն

ՀԱՍՑԷՆԵՐ ՖՐԱՆՍԱԲՆԱԿ ՀԱՅԵՐՈՒ, 176 էջ
Գինն է 6 ֆր., փոստի ծախքով 7 ֆր., contre remboursement 7.50 ֆր.
Փնտռել բոլոր գրավաճառներու մօտ
Կեդրոն.—«Արփի»գրատուն, L. Mozian, 5 rueChamplaine, Paris (20)



## Հ. Յ. Դ.

*Փ Ա Ր Ի Զ*

ԱՆԻԷՌ, Պուա-Քոլոմպի Ջէյթուն կոմիտէի վիճաբանական ժողովը այսօր Ուրբաթ իրիկուն ժամը 8.45ին, 68 Rue Charles Chefson, ծխավաճառի խանութը, Պուա Քոլոմպ, կը հրաւիրուին բոլոր ընկերներն ու համակիրները:

ԱԼՖՈՐՎԻԼԻ Ս. Մինասեան ենթակոմիտէի ընդհ. ժողովը այս կիրակի ժամը 2.30ին, 1 Bld. Carnot, Ալֆորվիլ:

ՊԱՆԵԷՕ-Քաշան Արծիւ խումբի ժողովը այս կիրակի ժամը 2.30ին, ընկ. Ս. Ալթունեանի բնակարանը՝ 17 rue Ampère, Cachan. Կարեւոր օրակարգ: Ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է:

*ՍԱՐՍԷԼ-Առնովիլ ենթակոմիտէն ստիպողաբար ժողովի կը հրաւիրէ Հրայր խումբի ընկերները, այս Շաբաթ իրիկուն ժամը 9ին, ընկեր Ալատինեանի բնակարանը: Պարտաւորիչ ներկայութիւն: Բացակայողները պատասխանատու կը նկատուին:*

*Ռազմիկ խումբի ընկերները ստիպողաբար ժողովի կը հրաւիրուին այս Կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին ընկեր Խաչատուրեանի բնակարանը: Բացակաները պատասխանատու կը նկատուին:*

*Գ Ա Ր Ա Ռ*

*ՄԱՐՍԷՅԼԻ «Քրիստափոր» ենթակոմիտէն ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները 23մարտ երկուշաբթի ժամը 2,30ին Ժանոթ հաւաքատեղին: Կարեւոր օրակարգ: Ներկայանալ անզամատետրով:*

## ՑՈՒՑԱՏԵՏՐ

*Ա. Ե. Հ. Կ. Խաչի Փարիզի Մանուկներու Պաշտպանութեան մասնաճիւղի ընդհ. ժողովը այս կիրակի կէս օրէ յետոյ ժամը 3ին: Օրակարգ.— 1. Պ. Վ. Համբարձումեան կը խօսի «Հայ կնոջ իրաւունքներու մասին», Հ. Կ. Խաչի 20 ամեակը, ընթացիկ հարցեր:*

*Կը խնդրուի բոլոր անդամուհիներէ եւ համակիրներէն ներկայ ըլլալ որոշեալ ժամուն:*

*ԼԻՈՆԻ Զ. Ե. Ռ. Միութեան վարչութիւնը ստիպողաբար ժողովի կը հրաւիրէ բոլոր անդամները այս կիրակի կէս օրէ վերջ, ժամը ճիշդ 2.30ին 181,* Cours Lafayette, Café de la Gare*ի ներքնասրահը: Կարեւոր օրակարգ.*

## ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

*ՍՏԱՑԱՆՔ*
*Տրակինեան, Ա. Հ.— 140:*
*Սէն Թ'էթիէն, Գործ.— 64:*
*Մարսէյլ, Գործ.— 1409.50:*
*Կարգադրեցինք:*

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Կը փնտռուի Մալաշի Զավուշլու Թաղէն Լուսնթագ Սահակեան, հօր անունը՝ Յարութիւն (կառավարական պաշտօնեայ), մօր անունը՝ Խաթուն (վարժուհի), եղբօր անունը՝ Սամուէլ, Տէրզօրի ջարդին 9—10 տարեկան էր եւ կը գտնուէր Շէտտատիյէ: Լուր ունեցողներէն կը խնդրուի իմացնել M. Fernezlianի, 36 Rue de la Part Dieu, Lyon, (Rhône). France.

— Կը փնտռուի Կէյվէի Միջագիւղէն Շնորհիկ Սէմէրճեան: Լուր առնուած է թէ 1927ին կը գտնուէր Պոլիս, իմացնել իր քրոջ Քնարիկ Սէմէրճեանի, 72 Rue Jean Jeaques Rousseau, Issy - les - Moulineaux, (Seine) France.

*— Սուրէն Փանոսեան կը փնտռէ իր եղբայրները՝ Սիմոն (Ճանօ), Արիստակէս եւ քոյրերը՝ Զմրուխտ եւ Մարգրիտ Փանոսեան, որոնք ընդհ. պատերազմին անյայտացած են: Իմացնել Յառաջի վարչութեան:*

*— Կը փնտռեմ եղբայրներս Սասունի Ահարոնք գիւղացի Յովհաննէս, Կարապետ եւ Պօղոս Շահինեան, որոնք ընդհ. պատերազմէն առաջ կը գտնուէին Տիգրանակերտի Հուսայնան գիւղը: Կրտսեր եղբայրս Արմենակ 1914ին կ'աշխատէր Բէմախի ազահանքներուն մէջ: Մինչեւ այսօր իրենց մասին լուր չկայ: Իրենց հասցէն գիտցողներէն կը խնդրուի իմացնել Շահինեան Մկրտիչի 96* bis rue de la Tour-Billy, Argenteuil, (S. et O.) France: *Ճշգրիտ լուր տուողին 500 ֆրանք նուէր:*




IMPRIMERIE - **MASSIS** - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H STEPHAN

*Նոյնը պիտի ըլլայ նաեւ գերմանեւֆրանսական պայմանագրութեան համար։*

*Ամբողջ գերմանական մամուլը այս պայմանագրութիւնը կը նկատէ շատ մեծ կարեւորութիւն ներկայացնող դէպք մը երկու երկիրներուն համար. որոնց միացումը կը հետապնդուի ստուերանաբար։*















## „ՓԵՏՐՈՒԱՐ 18„ ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

*Կազմակերպուած Հ. Յ. Դ. Փարիզի կոմիտէի կողմէ*

Այս Շբ. իրիկուն ժամը 8.30էն մինչեւ առաւօտ Salle pour Fêtes*ի մէջ*

94 Bld. Auguste Blanqui *մէթրօ* Glacière

*Կը նախագահէ՝ Ընկ. Ս. ՎՐԱՑԵԱՆ*

*Կը խօսին՝ ընկերներ Վ. ՓԱՓԱԶԵԱՆ եւ Վ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄԵԱՆ*

*Գեղարուեստական բաժին* *Մուտք՝* 5 *ֆրանք*

## ՍԿԱՈՒՏԱԿԱՆ ՑԵՐԵԿՈՅԹ

կազմակերպուած Հ. Մ. Ը. Մ.ի Պուա Քոլոմպի մասնաճիւղին կողմէ *29* Մարտ կիրակի *ժամը 2.30*ին Պուա Քոլոմպի Թաղապետական սրահին մէջ․

*Կը խօսի՝ Պր. Ե. ՏԷՐ ԱՆԴՐԷԱՍԵԱՆ*

երգ, նուագ, արտասանութիւն եւ սիրուն անակնկալներ

*Կը ներկայացուի՝ «ԲԱՆԱԿՈՒՄ ՄԸ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԷՋ»*

*Սկաուտական կեանքէ*

## *ԿՈՉ ՄԱՐՍԻԼԱՀԱՅԵՐՈՒՆ*

6 ԱՊՐԻԼ ԵՐԿՈՒՇԱԲԹԻ · · · · · ·

## Հ. Կ. Խ ՉԻ 20ԱՄԵԱԿԸ ԿԸ ՏՕՆՈՒԻ

Հովանաւորութեամբ եւ նախագահութեամբ

Պ. Ա. ԱՀԱՐՈՆԵԱՆԻ

Ապրիլ 19ին կիրակի օր: Մանրամասնութիւնները յաջորդով







## Հ. Յ. Դ.

Գ Ա Ւ Ա Ռ

Լիոնի կայծակ խումբի ժողովը վաղը իրիկուն ժամը 8ին Հ. Յ. Դ. Գրադարանի սրահին մէջ ։

*փնտռէ իր եղբայրները՝ (Տէքէնտեցի. Սեբաստիա) Սիմօն (Ճանօ), Արիստակէս եւ քոյրերը՝ Ջմրուխտ եւ Մարգրիտ Փանոսեան, որոնք ընդհ. պատերազմին անյայտացած են։ Իմացնել Յառաջի վարչութեան։*

*— Կը փնտռեմ եղբայրներս Սասունի Ահարոնք գիւղացի Յովհաննէս, Կարապետ եւ Պօղոս Շահինեան, որոնք ընդհ. պատերազմէն առաջ կը գտնուէին Տիգրանակերտի Հուսայնան գիւղը։ Կրտսեր եղբայրս Արմենակ 1914ին կ'աշխատէր Բէմախի աղահանքներուն մէջ։ Մինչեւ այսօր իրենց մասին լուր չկայ։ Իրենց հասցէն գիտցողներէն կը խնդրուի իմացնել Շահինեան Մկրտիչի 96* bis rue de la Tour-Billy, Argenteuil, (S. et O.) France․ *Ճշգրիտ լուր տուողին 500 ֆրանք նուէր։*

## ՑՈՒՇԱՏԵՏՐ

*Զ. Ե. Ո. Միութեան Փարիզի վահագն գրադարանին դասախօսական ժողովը այս հինգշաբթի երեկոյ ժամը 9ին Ֆլօրիայի մէջ։ Կը խօսի Օր. Արաքսի Թորոսեան* Տրապիզոնցի Ընթառամ *վէպին մասին։ Մէկ ժամ սինէմա,* Ճթիւ 19 փոլիսը: *Կը հրաւիրուին անդամներն ու համակիրները։*

## *ՆԱՄԱԿԱՏՈՒՓ*

*ՍՏԱՑԱՆՔ*

*Բոլոնպ, Ա. Տ.— 40,*
*Վալանս, Խ. Դ.— 35,*
*Սարսէլ, Մ. Ժ.— 70,*
*Լաթաքիա, Ա. Ա.— 200,*
*Մարսէյլ Ս. Մ.— 207,*
*Տրակինեան, Ե. Թ.— 25,*
*Ժընեւ, Տիլ.— 625,*
*Ժուանէօզ, Ս. Մ.— 35,*

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Կը փնտռուի Մարաշի Զավուշլու Թաղէն Լուսմթագ Սահակեան, հօր անունը՝ Յարութիւն (կառավարական պաշտօնեայ), մօր անունը՝ Խաթուն (վարժուհի), եղբօր անունը՝ Սամուէլ, Տէրզօրի ջարդին 9—10 տարեկան էր եւ կը գտնուէր Շէտտատիյէ: Լուր ունեցողներէն կը խնդրուի իմացնել M. Fernezlian*ի*, 36 Rue de la Part Dieu, Lyon, (Rhône). France.

*— Սուրէն Փանոսեան կը*












IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H. STEPHAN

# „ՓԵՏՐՈՒԱՐ 18„ ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

*կազմակերպուած Հ. Յ. Դ. Փարիզի կոմիտէի կողմէ*

Այս Շբ. իրիկուն ժամը 8.30էն մինչեւ առաւօտ Salle pour Fêtesի մէջ

94 Bld. Auguste Blanqui *մէթրօ* Glacière

*կը Նախագահէ՝ Ընկ. Վ. ՓԱՓԱԶԵԱՆ*

*կը խօսին՝ ընկերներ Ս. ՎՐԱՑԵԱՆ եւ Վ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄԵԱՆ*

*Գեղարուեստական բաժնին կը մասնակցին՝* Օր. Պիւլպիւլեան, Պ. Նաւասարդեան (*երգ*), Պ. Պ. Պալապանեան, Ս. Թորոսեան (*արտասանութիւն*), Սիփան *երգչախումբը՝ ղեկավարութեամբ* Պ. Սաքօ Յակոբեանի:

*Եւրոպական պար, ընտիր ճաշ, ճոխ պիւֆէ ժողովրդական գիներով:* *ՄՈՒՏՔ 5 ՖՐԱՆՔ*

## ՄԱՐՍԷՅԼԻ Հ. Յ. Դ. ԴՊՐՈՑ

*ժամը 8.30—9.15 Հ. Յ. Դ. Ծրագրի մեկնաբանում (ընկ. Պ. Հիւսեան):*

*ժամը 9.30—10.15 ընկ. Արտաւազդ Հանըմեան:*

## ՍԿԱՈՒՏԱԿԱՆ ՑԵՐԵԿՈՅԹ

կազմակերպուած Հ. Մ. Ը. Մ.ի Պուա քոլոմպի մասնաճիւղին կողմէ *29* Մարտ կիրակի ժամը *2.30*ին Պուա քոլոմպի Թաղապետական սրահին մէջ:

*կը խօսի՝ Պր. Ե. ՏԷՐ ԱՆԴՐԷԱՍԵԱՆ*

երգ, նուագ, արտասանութիւն եւ սիրուն անակնկալներ

*կը Ներկայացուի՝ «ԲԱՆԱԿՈՒՄ ՄԸ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԷՋ»*

*Սկաուտական կեանքէ*

## ՊԱՐԱՀԱՆԴԷՍ ՊՐԻՒՍԷԼԻ ՄԷՋ

կազմակերպուած Հայ կարմիր խաչի կողմէ

Այս Շաբաթ իրիկուն ժամը 10ին Résidence Palaceի մէջ

147 Rue de la Loi

պար, attractions եւ անակնկալներ

## ԸՆՏԱՆԵԿԱՆ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ ՏԷՍԻՆԻ ՄԷՋ

*Կազմակերպուած Զմիւռնիոյ Նահանգային Հայրենակցական Միութեան կողմէ: Այս Շաբաթ իրիկուն ժամը 9էն մինչեւ առաւօտ Տէսինի Սօսիէթէ Լիոնէզի սրահին մէջ:*

*Եւրոպական ընտիր նուագ*

մուտք՝ այր եւ կին 5 ֆրանք — Աւաշակերտին 3 ֆրանք







## Հ. Յ. Դ.

*ՖԱՒԱՌ*

*ԼԻՈՆԻ Պատ. Միութեան ընդհ. ժողովը վաղը Հինգշաբթի իրիկուն ժամը 8.30ին*, 11 rue Dunoir. *Ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է:*

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

*Զ. Ե. Ո. Միութեան Փարիզի Վահագն գրադարանին դասախօսական ժողովը վաղը հինգշաբթի երեկոյ ժամը 9ին Ֆլոբիայի մէջ: Կը խօսի Օր. Արաքսի Թորոսեան* Տրապիզոնցի Անթառամ *վէպին մասին: Մէկ ժամ սինէմա,* Թիւ 19 փոլիսը: *Կը հրաւիրուին անդամներն ու համակիրները:*

*Զ. Ե. Ո. Միութեան Պանեօ-Բաշան մասնաճիւղին դասախօսութեանց բացումը այս Կիրակի ժամը 3ին Պանեոյի մանկապարտէզին մէջ: Կը խօսի Շ. Նարդունի եւ կը ներկայացուի մէկ ժամ սինէմա Շարլոյի ֆիլմը: Կը հրաւիրուին անդամներն ու համակիրները:*

## ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

*ՍՏԱՑԱՆՔ*

*Վիէն, Զ. Խ.— 10:*
*Տիկուան, Ս. Ս.— 35:*
*Լա Կոտինիէռ, Ա. Ս.— 5:*
*Ժուանվիլ, Ն. Ն.— 60:*

*ՆԱՄԱԿ ունին Օր. Գոհար Զազարեան, Փայաճուկ գիւղացի Արմենակ Կարապետեան: Դիմել «Յառաջ»ի վարչութեան:*

*Պ. Հայկ Թօփաքեանէ կը խնդրուի հանդիպիլ «Յառաջ»ի խմբագրատունը:*

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— *Տիկ. Արշալոյս Փէնտիքեան կը փնտռէ իր ազգականներէն Տիկ. Մարիամ Փէնտիկեան եւ զաւակները՝ Կարապետ, Մանուկ եւ Թագւոր, որոնց Փարիզ ըլլալը կ'ենթադրուի: Կը խնդրուի գրել* Archaluysse Pendikianի. Karagheuzian Home, La Gaudinière, Ville aux-Clercs, (Loir et Cher), France.

— կը փնտռուի Մարաշի Զաւուշլու Թաղէն Լուսնթագ Սահակեան, հօր անունը՝ Յարութիւն (կառավարական պաշտօնեայ), մօր անունը՝ Խաթուն (վարժուհի), եղբօր անունը՝ Սամուէլ, Տէրզօրի ջարդին 9—10 տարեկան էր եւ կը գտնուէր Շէտտատիյէ: Լուր ունեցողներէն կը խնդրուի իմացնել M. Fernezlianի, 36 Rue de la Part Dieu, Lyon, (Rhône). France.

— *Սուրէն Փանոսեան կը փնտռէ իր եղբայրները՝ (Տէրքէնտեցի. Սեբաստիա) Սիմօն (Ճանօ), Արիստակէս եւ քոյրերը՝ Զմրուխտ եւ Մարգրիտ Փանոսեան, որոնք ընդհ. պատերազմէն անյայտացած են: Իմացնել Յառաջի վարչութեան:*

— *Կը փնտռեմ եղբայրներս Սասունի Աճարոնք գիւղացի Յովհաննէս, Կարապետ եւ Պօղոս Շահինեան, որոնք ընդհ. պատերազմէն առաջ կը գտնուէին Տիգրանակերտի Հուսայնան գիւղը: Կրտսեր եղբայրս Արմենակ 1914ին կ'աշխատէր Բէմախի աղահանքներուն մէջ: Մինչեւ այսօր իրենց մասին լուր չկայ: Իրենց հասցէն գիտցողներէն կը խնդրուի իմացնել Շահինեան Մկրտիչի* 96 bis rue de la Tour-Billy, Argenteuil, (S. et O.) France: *Ճշգրիտ լուր տուողին 500 ֆրանք նուէր:*

*Պ. ՄԻՐԱՅԷԼ Սեթեանէ կը խնդրուի իր հասցէն հաղորդել «Յառաջ»ի վարչութեան: Իր վերջին հասցէն էր՝* 5 Rue Cabitaine Ferber. Issy lis-Mouli-neaux.


























IMPRIMERIE - MASSIS -ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris *(10)*

Le Gérant H. STEPHAN

## „ՓԵՏՐՈՒԱՐ 18„ ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

*կազմակերպուած Հ. Յ. Դ. Փարիզի կոմիտէի կողմէ*

Այս Շբ. իրիկուն ժամը 8.30էն մինչեւ առաւօտ Salle pour Fêtesի մէջ

94 Bld. Auguste Blanqui *մէթրօ* Glacière

*կը նախագահէ՝ Ընկ. Վ. ՓԱՓԱԶԵԱՆ*

*կը խօսին՝ ընկերներ Ս. ՎՐԱՑԵԱՆ եւ Վ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄԵԱՆ*

*Գեղարուեստական բաժնին կը մասնակցին՝* Օր. Պիւլպիւլեան, Պ. Նաւասարդեան *(երգ)*, Պ. Պ. Պալապանեան, Ս. Թօրոսեան *(արտասանութիւն)*, Սիփան *երգչախումբը՝ ղեկավարութեամբ* Պ. Սաքօ Ցակոբեանի:

*Եւրոպական պար, ընտիր ճաշ, ճոխ պիւֆէ ժողովրդական գիներով։* *ՄՈՒՏՔ 5 ՖՐԱՆՔ*

Տոմսերը կը ծախուին «Յառաջ»ի խմբագրատունը

---

**Հ. Յ. Դ. ԼԻՈՆԻ ՇՐՋԱՆԻ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑՉԱԿԱՆ ԺՈՂՈՎԸ** այս կիրակի առաւօտ ժամը 9ին Հ. Յ. Դ. Գրադարանին մէջ, 11 Rue Dunoir: կը խնդրուի բոլոր ներկայացուցիչներէն որոշեալ ժամին ներկայ ըլլան:

---

## ՍԿԱՈՒՏԱԿԱՆ ՑԵՐԵԿՈՅԹ

կազմակերպուած Հ. Մ. Ը. Մ.ի Պուա քոլոնպի մասնաճիւղին կողմէ 29 մարտ կիրակի ժամը 2.30ին Պուա քոլոնպի Թաղապետական սրահին մէջ։

*կը խօսի՝ Պր. Ե. ՏԷՐ ԱՆԴՐԷԱՍԵԱՆ*

երգ, նուագ, արտասանութիւն եւ սիրուն անակնկալներ

*կը ներկայացուի՝ «ՔԱՆԱԿՈՒՄ ՄԸ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԷՋ»*

*Սկաուտական կեանքէ* *Մուտք 3 ֆրանք*

---



---

## Հ. Յ. Դ.

*ՓԱՐԻԶ*

ԱՌՆՈՒՎԻԼ-լէ-կոնէսի Ռաղմիկ խումբի ժողովը վաղը Ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին ընկ. Պուճիկեանի բնակարանը, 63 rue du Parc, Առնուվիլ:

ԱՆԻԷՌԻ Զէյթուն կոմիտէի վիճաբանական ժողովը՝ վաղը Ուրբաթ իրիկուն, ժամը 8.45ին 142 Rue du Menil կամ 1 Rue de Metz, Asnières. Ստիպողաբար կը հրաւիրուին բոլոր ընկերներն ու համակիրները:Նիւթ՝ շարունակութիւն նախորդի:

*ԳԱՒԱՌ*

*ԼԻՈՆԻ Պատ. Միութեան ընդհ. ժողովը այսօր Հինգշաբթի իրիկուն ժամը 8.30ին*, 11 rue Dunoir. *Ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է։*

ՄԱՐՍԷՅԼԻ Աղբիւր Սերոբ ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր բոլոր ընկերները, այս կիրակի ժամը 2.30ին կուսակցութեան սովորական հաւաքատեղին։

ՄԱՐՍԷՅԼԻ Հ. Յ. Դ. Պատ. Միութեան ընդհ. անդամական ժողովը այս Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին։ ընկերներու ներկայութիւնը անհրաժեշտ է:

*ՄԱՐՍԷՅԼԻ Իշխան ենթակոմիտէն ժողովի կը հրաւիրէ՝ Արամ, Աղբիւր Սերոբ, Եփրեմ խան, Համազասպ եւ Վարդգէս խումբերը այս Շաբաթ իրիկուն ժամը 8ին սովորական հաւաքատեղին։*

կը խնդրուի բոլոր 18 տարիքը լրացնող երկսեռ հայրենակիցներէն որ բարեհաճին ներկայ ըլլալ այս ժողովին, կատարած ըլլալու համար իրենց հայրենակցական պարտականութիւնները: Նաեւ կը խնդրուի բոլոր մասնաճիւղերու վարչութիւններէն որ ըստ կանոնագիրծրագրի ղրկեն իրենց ներկայացուցիչները գրաւոր լիազօրագրերով: խիստ կարեւոր օրակարգ։

Ներկաներու թիւը մեծամասնութիւն համարուելով ժողովը օրինաւոր պիտի նկատուի:

*ՆՈՒՊԱՐԵԱՆ Մատենադարանին յառաջիկայ բանախօսութիւնը՝ այսօր Հինգշաբթի կէսօրէ վերջ ժամը 4ին։*

*Պիտի խօսին՝ Պ. Յարութիւն Արզնեան՝ Պուլկարահայ գաղութի մասին։ Պ. Յովհաննէս Պօղոսեան՝ Հայաստանի եւ Նուպարաշէնի մասին։*

*ԼԻՈՆԻ ԽԱՐԲԵՐԴԻ եւ Յար. Գաւառներու Հայր. միութեան ընդհ. ժողովը վաղը Ուրբաթ իրիկուն ժամը 8ին*, 14 rue François Garcin, *Պ. Նիկողոսեանի ճաշարանին մէջ։ Կը հրաւիրուին անդամ եւ ոչ անդամ բոլոր հայրենակիցները։*

*Զ. Ե. Ո. Միութեան Փարիզի Վահագն գրադարանին դասախօսական ժողովը այսօր Հինգշաբթի երեկոյ ժամը 9ին Ֆլորիայի մէջ։ Կը խօսի Օր. Ա. րաքսի Թօրոսեան* Տրապիզոնցի Ընթառամ *վէպին մասին։ Մէկ ժամ սինէմա*, Թիւ 19 փոլիսը: *Կը հրաւիրուին անդամներն ու համակիրները։*

*Զ. Ե. Ո. Միութեան Պանեօ-Քաշան մասնաճիւղին դասախօսութեանց բացումը այս Կիրակի ժամը 3ին Պանեոյի մանկապարտէզին մէջ։ Կը խօսի Շ. Նարդունի եւ կը ներկայացուի մէկ ժամ սինէմա Շարլոյի Ֆիլմը։ Կը հրաւիրուին անդամներն ու համակիրները։*

---

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ԼԻՈՆԻ Նալլուխանի Հայր. Միութեան կեդրոնական վարչութիւնը ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր հայրենակիցները այս կիրակի կէսօրէ վերջ ճիշդ ժամը 2ին երրորդ Թաղապետարանի գրադարանին մէջ։

---

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Տիկին Սրբուհի եւ Աւետիս Խլղաթեանները կը փնտռեն Խոյի Սէյդավար գիւղացի Աբրահամ Եղիաեան, որ Թուրքերու կողմէ 1918ին գերի է տարուած։ իմացնել Աւետիս Խլղաթեանի «Շիր» ոսկերչատուն Թաւրիզ, Պարսկաստան։

Արտասահմանի թերթերէն կը խնդրուի արտատպել։

— *Տիկ. Արշալոյս Փէնտիքեան կը փնտռէ իր ազգականներէն Տիկ. Մարիամ Փենտիկեան եւ զաւակները՝ Կարապետ, Մանուկ եւ Թագուհի, որոնց Փարիզ ըլլալը կ'ենթադրուի։ Կը խնդրուի գրել* Archaluysse Pendikian*ի*. Karagheuzian Home, La Gaudinière. Ville aux Clercs, (Loir et Cher), France.

— կը փնտռուի Մարաշի Զավուշլու Թաղէն Լուսնթագ Սահակեան, հօր անունը՝ Յարութիւն (կառավարական պաշտօնեայ), մօր անունը՝ Խաթուն (վարժուհի), եղբօր անունը՝ Սամուէլ։ Տէրզօրի ջարդին 9–10 տարեկան էր եւ կը գտնուէր Շէտտատիյէ: Լուր ունեցողներէն կը խնդրուի իմացնել M. Fernezlianի, 36 Rue de la Part Dieu, Lyon, (Rhône). France.

— *Սուրէն Փանոսեան կը փնտռէ իր եղբայրները՝ (Տէրէնտեցի. Սեբաստիա) Սիմոն (Ճանօ), Արիստակէս եւ քոյրերը՝ Զմրուխտ եւ Մարգրիտ Փանոսեան, որոնք ընդհ. պատերազմին անյայտացած են։ Իմացնել* Յառաջ*ի վարչութեան։*

---

*Պ. ՄԻՔԱՅԷԼ Սեթեանէ կը խնդրուի իր հասցէն հաղորդել «Յառաջ»ի վարչութեան։ Իր վերջին հասցէն էր՝* 5 Rue Cabitaine Ferber. Issy lis-Moulineaux.




IMPRIMERIE - MASSIS -ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H. STEPHAN

## ԵՒՐ Կ ԿՈՄԻՏԷՆ ՎԻՃԱԲԱՆԱԿԱՆ — ԴԱՍԱԽՕՍԱԿԱՆ

*ժողովի կը հրաւիրէ Փարիզի եւ արուարձաններու բոլոր ընկերները այս Չորեքշաբթի իրիկուն ժամը 8.30ին Փլաս Շաթլէ Սառա Պէռնարի քովի սրճարանը։*

*կը խօսի՝ Կ. ՍԱՍՈՒՆԻ, նիւթ՝ Հ. Յ. Դաշնակցութիւնը քառասնամեակի ընթացքին եւ յետոյ։ Կը վիճաբանին ընկերներ ԵՐԻՑԱՆՑ, ԳԵՒՈՆԵԱՆ, ՄՕՋԵԱՆ ԵՒ ՇՈՒՇԱՆԵԱՆ։*

## Հ. Յ. Դ. ԼԻՈՆԻ ՇՐՋԱՆԻ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑՉԱԿԱՆ ԺՈՂՈՎԸ

վաղը կիրակի առաւօտ ժամը 9ին Հ. Յ. Դ. Գրադարանին մէջ, 11 Rue Dunoir: կը խնդրուի բոլոր ներկայացուցիչներէն որոշեալ ժամին ներկայ ըլլան:

# „ՓԵՏՐՈՒԱՐ 18„ ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

*կազմակերպուած Հ. Յ. Դ. Փարիզի կոմիտէի կողմէ*

Այս իրիկուն ժամը 8.30էն մինչեւ առաւօտ Salle pour Fêtesի մէջ

94 Bld. Auguste Blanqui *մեթրօ* Glacière

*կը նախագահէ՝ Ընկ. Վ. ՓԱՓԱԶԵԱՆ*

*կը խօսին՝ ընկերներ Ս. ՎՐԱՑԵԱՆ եւ Վ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄԵԱՆ*

*Գեղարուեստական բաժնին կը մասնակցին՝* Օր. Փիլպիլեան, Պ. Նաւասարդեան *(երգ)*, Պ. Պ. Պալապանեան, Ս. Թորոսեան *(արտասանութիւն)*, Սիփան *երգչախումբը՝ ղեկավարութեամբ* Պ. Սաքօ Ցակոբեանի:

*Եւրոպական պար, ընտիր ճաշ, ճոխ պիւֆէ ժողովրդական գիներով։* *ՄՈՒՏՔ 5 ՖՐԱՆՔ*

## ՀՐԱՊԱՐԱԿԱՅԻՆ ԲԱՆԱԽՕՍՈՒԹԻՒՆՆԵՐ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

*Այսօր Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին Սէն Լուի մէջ*

*Վաղը կիրակի առաւօտ ժամը 9ին Սինէ Թափի Վէր, Մարսէյլ*

*Իսկ կէսօրէ վերջ ժամը 5ին Պուլվար Օտտօի սինէմային մէջ*

կը խօսի՝ ԸՆԿ. ԱՐՏԱՒԱԶԴ ՀԱՆԸՄԵԱՆ

*Մուտքը ազատ է*

## ԲԱՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ ՄԷՋ

*Վաղը կիրակի ժամը 4ին վարժարանին դահլիճին մէջ*

26 Rue Troyon, Sèvres

*կը խօսի Պ. ԺԻՒՍԹԷՆ ԿՈՏԱՐ, ծերակուտական եւ նախկին նախարար, նիւթ ունենալով «Հայոց տնտեսական դերը Ֆրանսայի եւ Սուրիոյ մէջ։*

## ՍԿԱՈՒՏԱԿԱՆ ՑԵՐԵԿՈՅԹ

կազմակերպուած Հ. Մ. Ը. Մ.ի Պուա քոլոնպի մասնաճիւղին կողմէ վաղը կիրակի ժամը 2.30ին Պուա քոլոնպի Թաղապետական սրահին մէջ։

*կը խօսի՝ Պր. Ե. ՏԷՐ ԱՆԴՐԷԱՍԵԱՆ*

*Սկաուտական կենանքէ* *Մուտք 3 ֆրանք*

## ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ ՎԻԷՆԻ ՄԷՋ

*Վիէնի եօզկատի եւ շրջ. Հայր. միութեան կողմէ*

*Վաղը կիրակի կէսօրէ վերջ ժամը ճիշդ 2ին,*

150 Rue Lafayette, փոն Թ'էվէք

*կը ներկայացուի՝ ՍՈՒՐԲ ՏՕՄԷՆԻՔ ԿՂԶԻՈՅՆ ԳԵՐԻՆ եւ գաւեշտ մը*

## ԿՈՉ ՄԱՐՍԻԼԱՀԱՅԵՐՈՒՆ

*6 ԱՊՐԻԼ ԵՐԿՈՒՇԱԲԹԻ ԿԷՍՕՐԷ ՎԵՐՋ ԺԱՄԸ 3ԻՆ*

*ՓՈՒԹԱՑԷՔ ՍԱԼՈՆ ՇԱՓ ՎԱՅԵԼԵԼՈՒ ՀԱՄԱՐ . . .*

# Հ. Յ. Դ.

*ՓԱՐԻԶ*

ՔԼԻՇԻ ՍԷՆԹ ՈՒԷՆ Լըվալուայի «Ազատամարտ» խումբի ժողովը վաղը կիրակի իրիկուն ժամը 8.30ին, Քլիշի,Place République, պիւրօ Թապայի ներքնասրահը: Համակիրները կընան ներկայ ըլլալ:

*ԳԱՒԱՌ*

ՄԱՐՍԷՅԼԻ Աղբիւր Սերոբ ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր բոլոր ընկերները, վաղը կիրակի ժամը 2.30ին կուսակցութեան սովորական հաւաքատեղին։

ՄԱՐՍԷՅԼԻ Ջաւարեան ենթակոմիտէի ժողովը վաղը կիրակի ժամը 2.30ին ծանօթ հաւաքատեղին :

*ՄԱՏԼԷՆԻ(Նիս) Անդրանիկ խումբին դասախօսական ժողովը այս երեկոյ ժամը 8,30ին* 202, Boul. de la Madeleine*ի սրճարանը։ Կը խօսի ընկեր Ա. Աբօեան։ Կը հրաւիրուին Նիսի բոլոր ընկերները։*

ԼԻՈՆԻ Նալլուխանի Հայր. Միութեան կեդրոնական վարչութիւնը ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր հայրենակիցները վաղը կիրակի կէսօրէ վերջ ճիշդ ժամը 2ին երրորդ Թաղապետարանի գրադարանին մէջ։

կը խնդրուի բոլոր 18 տարիքը լրացնող երկսեռ հայրենակիցներէն որ բարեհաճին ներկայ ըլլալ այս ժողովին, կատարած ըլլալու համար իրենց հայրենակցական պարտականութիւնները: Նաեւ կը խնդրուի բոլոր մասնաճիւղերու վարչութիւններէն որ ըստ կանոնագիր ծրագրի ղրկեն իրենց ներկայացուցիչները գրաւոր լիազօրագրերով: խիստ կարեւոր օրակարգ։

Ներկաներու թիւը մեծամասնութիւն համարուելով ժողովը օրինաւոր պիտի նկատուի:

ՓԱՐԻԶԻ Հայ Ուսանողական միութեան տարեկան երկրորդ ընդհ. ժողովը վաղը կիրակի առաւօտ ժամը 10ին Հայ Ուսանողական տան մէջ, 41 Bld. Jourdan, Paris (14).

## ՑՈՒՇԱՏԵՏՐ

*Զ. Ե. Ռ. Միութեան Պանեօ-Բաշան մասնաճիւղին դասախօսութեանց բացումը վաղը Կիրակի ժամը 3ին Պանեոյի մանկապարտէզին մէջ։ Կը խօսի Շ. Նարդունի եւ կը ներկայացուի մէկ ժամ սինէմա Շարլօյի ֆիլմը։ Կը հրաւիրուին անդամներն ու համակիրները։*

*Զ. Ե. Ռ, Միութեան Վալանսի Մասնաճիւղի ընդհ. ժողովը 30 մարտ երկուշաբթի երեկոյեան ժամը 8ին Հ. Յ. Դ. Ակումբին մէջ։*

*ՄԱՍՆԱԳԷՏ ԲԺԻՇԿՆԵՐ*

96 R. Rivoli, *մէթ. Շաթլէ։ Արմատ. եւ նոր մէթոտ. դարմ. արանց եւ կանանց մորթի, արեան, վեներ. հիւանդ. եւ վարախ։ Ամէն օր 9-12, 2-8, Կիր, 9-12։*

*ՄԱՍՆԱԳԷՏ ԲԺԻՇԿՆԵՐ 123* Bd. Sébastopol, *Փարիզ, Մէթ.* Réaumur. *Միզանցք., արեան, մորթի հիւանդութ. տարրալուծ.։ Կ'ընդունի ամէն օր 9—12 եւ 2—8 եւ Կիրակի առաւօտները։*

EMPIRE Միւզիք-Հոլ՝ 37 Av. Wagram

IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H. STEPHAN

**ԵԻՐ Կ ԿՈՄԻՏԷՆ ՎԻՃԱԲԱՆԱԿԱՆ — ԴԱՍԱԽՕՍԱԿԱՆ**

*ժողովի կը հրաւիրէ Փարիզի եւ արուարձաններու բոլոր ընկերները այս Չորեքշաբթի իրիկուն ժամը 8.30ին Փլաս Շաթլէ Սառա Պէռնարի քովի սրճարանը։*

*կը խօսի՝ Կ. ՍԱՍՈՒՆԻ. Նիւթ՝ Հ. Յ. Դաշնակցութիւնը քառասնամեակի ընթացքին եւ յետոյ։ Կը վիճաբանին ընկերներ ԵՐԻՑԱՆՑ, ԳԷՒՈՆԵԱՆ, ՄՕՋԵԱՆ ԵՒ ՇՈՒՇԱՆԵԱՆ։*














IMPRIMERIE - **MASSIS** - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H. STEPHAN

## ԵՒՐ Կ ԿՈՄԻՏԷՆ ՎԻՃԱԲԱՆԱԿԱՆ — ԴԱՍԱԽՕՍԱԿԱՆ

*ժողովի կը հրաւիրէ Փարիզի եւ արուարձաններու բոլոր ընկերները վաղը Զորեքշաբթի իրիկուն ժամը 8.30ին Փլաս Շաթլէ Սառա Պէռնարի քովի սրճարանը:*

*կը խօսի՝ կ. ՍԱՍՈՒՆԻ, նիւթ՝ Հ. Յ. Դաշնակցութիւնը քառասնամեակի ընթացքին եւ յետոյ: Կը վիճաբանին ընկերներ ԵՐԻՑԱՆՑ, ԳԵՒՈՆԵԱՆ, ՄՕԶԵԱՆ ԵՒ ՇՈՒՇԱՆԵԱՆ:*

## Հ. Կ. ԽԱՉԻ 20ԱՄԵԱԿԸ ԿԸ ՏՕՆՈՒԻ

Հովանաւորութեամբ եւ նախագահութեամբ

Պ. Ա. ԱՀԱՐՈՆԵԱՆԻ

Ապրիլ 19ին կիրակի օր: Մանրամասնութիւնները յաջորդով

''ՆԱՀԱՏԱԿ ԳՐԱԳԷՏՆԵՐՈՒ ԲԱՐԵԿԱՄՆԵՐ,, ՀԱՏՈՐ ԹԻՒ 3

Մայիսի վերջերը լոյս կը տեսնէ

## ԳԵՂԱՄ ՏԷՐ ԿԱՐԱՊԵՏԵԱՆԻ

(ՄՇՈՑ ԳԵՂԱՄ)

պատկերներ եւ պատմուածքներ գեղական կեանքէ

գին 20 ֆր. ուրիշ երկիրներ (բացի Ամերիկայէ) 1 տոլար

*Դիմել՝* L. Kévonian*ի* 235 Fg. St. Martin Paris (10e)

ԼՈՅՍ ԿԸ ՏԵՍՆԷ ԱՊՐԻԼ ԱՄՍՈՒՆ ՍԿԻԶԲԸ

## ''Մ Ե Ն Ք,, ՊԱՐԲԵՐԱԿԱՆ ԳՐԱԿԱՆՈՒԹԵԱՆ ԵՒ ԱՐՈՒԵՍՏԻ

*Հրատարակիչներն են՝* Նշան Պէշիկթաշլեան, Ղեւոնդ Մելոյեան, Հրաչ Սարգիսեան, Ռաֆայէլ Զարդարեան, Յարութիւն Ֆրէնկեան, Ոստանիկ, Գ. Գեղարքունի, Ն. Սարաֆեան, Բիւզանդ Թօփալեան, Փայլակ Միքայէլեան, Արշամ Տատրեան, Զ. Մ. Որբունի, Շահան Շահնուր, Վազգէն Շուշանեան, Շաւարշ Նարդունի:

Բաժանորդագրութեան պայմաններն են՝ *Ֆրանսա՝ Սուրիա, Պալքաններ, Թուրքիա, տարեկան 40 ֆր., միացեալ երկիրներ 2 տոլար: «ՄԵՆՔ»ի միայուն հասցէն է.—* H. Sarkissian 261 Fbg. St. Martin, Paris (10e).

ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

## ԱՄԷՆՈՒՆ ՀԱՍՑԷՆ

ՀԱՍՑԷՆԵՐ ՖՐԱՆՍԱԲՆԱԿ ՀԱՅԵՐՈՒ, 176 էջ

գինն է 6 ֆր., փոստի ծախքով 7 ֆր., contre remboursement 7.50 ֆր.

փնտռել բոլոր գրավաճառներու մօտ

կեդրոն.—«Արփի»գրատուն, L. Mozian, 5 rueChamplaine, Paris (20).

## Հ. Յ. Դ.

ՄԱՐՍԷՅԼԻ Խոստում ենթ.ընդհ. ժողովը վաղը Զորեքշաբթի իրիկուն ժամը 8.30ին սովորական հաւաքատեղին: կարեւոր օրակարգ. բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է:

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

*Զ. Ե. Ո. Միութեան Փարիզի վահագն գրադարանին դասախօսութիւնը այս հինգշաբթի երեկոյ ժամը 9ին Ֆլորիայի մէջ: Կը դասախօսէ Պ. Մ. Տէրպէտէրեան* Այնշթայնի մասին *(շարունակութիւն նախորդ դասախօսութեան): Մէկ ժամ սինէմա: Կը հրաւիրուին անդամներն ու համակիրները:*

*ՓԱՐԻԶԻ եւ արուարձաններու մէջ բնակող «Սուրիոյ եւ Լիբանանի» հպատակ բոլոր Հայերը կը հրաւիրուին 12 Ապրիլին կէսօրէ վերջ ճիշդ ժամը 2.30ին Փլաս Սէն Միշէլի Թիւ 8, Պիւրօ Թապայի վերնայարկը, զիրենք հետաքրքրող խիստ կարեւոր խորհրդակցութեան մը համար:*

## ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

*ՍՏԱՑԱՆՔ*

*Պազարճըք, Գունտ.— 2000 լէյ:*
*Լիոն, Նալ. Հայր. Միութ.— 30:*
*Փարիզ, Ղազ.— 30:*
*Լիոն, Գործ.— 1000:*
*Մարսէյլ, Գործ.— 981.60:*
*Փիէրֆէօ, Յ. Վ.— 35:*

*ԱՅՐԻ ՏԻԿԻՆ ԳԼԽԱԴԻՐ ՆԱԼԲԱՆՏԵԱՆ (Ծնեալ Էլմասեան), վախճանեցաւ 28 Մարտ Շաբաթ օր 43 տարեկան հասակին մէջ, Լարիպուազիեր հիւանդանոց* (41 Bd. Chapelle):

*Հանգուցեալին մարմինը պիտի փոխադրուի հիւանդանոցէն վաղը Զորեքշաբթի առաւօտ ժամը 11ին Սէն Վէնսան Բօլ Եկեղեցին* (Place Lafayette), *ուր յետ Ս. Պատարագի, յուղարկաւորութեան արարողութիւնը պիտի կատարուի: Թաղումը պիտի կատարուի* Pantin*ի գերեզմանատունը:*

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Տիկին Սրբուհի եւ Աւետիս Խլղաթեանները. կը փնտռեն Խոյի Սէյդավար գիւղացի Աբրահամ Եղիաեան, որ Թուրքերու կողմէ 1918ին գերի է տարուած: իմացնել Աւետիս Խլղաթեանի «Շիր» ոսկերչատուն Թաւրիզ, Պարսկաստան:

Արտասահմանի թերթերէն կը խնդրուի արտատպել:

— *Տիկ. Արշալոյս Փէնտիքեան կը փնտռէ իր ազգականներէն Տիկ. Մարիամ Փէնտիկեան եւ զաւակները՝ Կարապետ, Մանուկ եւ Թագւոր, որոնց Փարիզ ըլլալը կ'ենթադրուի: Կը խնդրուի գրել* Archaluysse Pendikian*ի.* Karagheuzian Home, La Gaudinière, Ville aux-Clercs, (Loir et Cher), France.

— կը փնտռուի Մարաշի Զավուշլու Թաղէն Լուսնթագ Սահակեան, հօր անունը՝ Յարութիւն (կառավարական պաշտօնեայ), մօր անունը՝ Խաթուն (վարժուհի), եղբօր անունը՝ Սամուէլ: Տէրզօրի ջարդին 9—10 տարեկան էր եւ կը գտնուէր Շէտտատիյէ: Լուր ունեցողներէն կը խնդրուի իմացնել M. Fernezlian*ի*, 36 Rue de la Part Dieu, Lyon, (Rhône). France.

— *Սուրէն Փանոսեան կը փնտռէ իր եղբայրները՝ (Տէրէնտեցի. Սեբաստիա) Սիմօն (Ճանօ), Արիստակէս եւ քոյրերը՝ Զմրուխտ եւ Մարգրիտ Փանոսեան, որոնք ընդհ. պատերազմին անյայտացած են: Իմացնել յառաջի վարչութեան:*

— *Կը փնտռեմ եղբայրներս Սասունի Ահարոնք գիւղացի Յովհաննէս, Կարապետ եւ Պօղոս Շահինեան, որոնք ընդհ. պատերազմէն առաջ կը գտնուէին Տիգրանակերտի Հուսայնան գիւղը: Կրտսեր եղբայրս Արմենակ 1914ին կ'աշխատէր Բէմախի աղահանքներուն մէջ: Մինչեւ այսօր իրենց մասին լուր չկայ: Իրենց հասցէն գիտցողներէն կը խնդրուի իմացնել Շահինեան Մկրտիչի 96* bis rue de la Tour-Billy, Argenteuil, (S. et O.) France: *Ճշգրիտ լուր տուողին 500 ֆրանք նուէր:*

— *Բնիկ Պիթլիսի Ս. Յովհաննիսայ թաղէն Նաճար Գէորգեանի որդին, Լեւոն Գէորգեան կը փնտռէ իր մօրաքոյրը (անունը չի յիշեր) որ Ամերիկա կը գտնուի, կը խնդրէ իր բոլոր հայրենակիցներէն որոնք իր մասին լուր ունին իմացնել՝ Լեւոն Գէորգեանի, 16,* Bd. des Italiens, St. Louis Marseille:

*Կը խնդրուի «Հայրենիք» օրաթերթէն արտատպել:*



IMPRIMERIE - MASSIS - EDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H. STEPHAN